# ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՅ

1883 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1 ԷՆ՝ ՄԻՆՉԵՒ ՅՎԵՐՋ ՅՈՒՆԻՍԻ 1885

*ՄԱՏՈՒՑԵԱԼ*

ԱՌ

**ԱՄԵՆԱՊԱՏԻՒ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՐ**

ՆԱԽԱԳԱՀ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ




Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. Կ. ՍԱՐԸԵԱՆ

—

**1885**

# ՏԵՂԵԿԱԳԻՐ ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԵԱՆ

***ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ***

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՅ

**1883 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1 ԷՆ ՄԻՆՉԵՒ ՑՎԵՐՋ ՅՈՒՆԻՍԻ 1885**

***ՄԱՏՈՒՑԵԱԼ***

ԱՌ

## ԱՄԵՆԱՊԱՏԻՒ Ս. ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՐՆ




**Կ. ՊՈԼԻՍ**

**ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. Կ. ՍԱՐՐԵԱՆ**

—

**1885**

# ԱՆԴԱՄՔ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՅ



| | | | |
|---|---|---|---|
| ԳԱԲՐԻԷԼ | ԷՖԷՆՏԻ | ԳԱԲՐԻԷԼԵԱՆ | ԱՏԵՆԱՊԵՏ |
| ԽԱՉԻԿ | » | ԿԱՄՍԱՐԱԿԱՆ | ԳԱՆՁԱՊԵՏ |
| ՄԻՀՐԱՆ | » | ՋՕՊԱՆԵԱՆ | ԱՏԵՆԱԴՊԻՐ |
| ՄԻՔԱՅԷԼ | » | ՍԱՐՐԱՖԵԱՆ | |
| ՅԱԿՈԲ | » | ԵԷՄԷՆԻՃԵԱՆ | |

Ծանօթութիւն. — Թէպէտև Պըլըխաանեան Գրիգոր և Արշակ Յակոբ Մեծ. էֆէնտիներն ևս Տնտեսական Խորհրդոյ անդամ ընտրուած էին, սակայն իրենց ընտրութեան առաջին օրէն հրաժարած լինելով Տնտեսական Խորհուրդն սոցա գործակցութենէն զրկուած է։

# ՏԵՂԵԿԱԳԻՐ ՀԱՄԱՐԱՏՈՒՈՒԹԵԱՆ

## ԱԶԳԱՑԻՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՅ

1883 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1ԷՆ ՄԻՆՉԵՒ ՑՎԵՐՋ ՅՈՒՆԻՍԻ 1885

*ՄԱՏՈՒՑԵԱԼ*

ԱՌ

## ԱՄԵՆԱՊԱՏԻՒ Ս. ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՐՆ

---

### ՍՐԲԱԶԱՆ ՀԱՅՐ ·

Անցեալ 1883 տարւոյ Դեկտեմբեր ամսոյ սկիզբն Տնտեսական Խորհուրդս Պատկառելի Քաղ. Ժողովոյ կողմէ ի պաշտօն կոչուելով՝ թէպէտ և կը վարանէր ստանձնել և վարել տնտեսական բազմահոգ պաշտօնն, և կզգար անոր ծանրութեանը հետ միջոցներուն նուազութիւնը, սակայն Քաղ. Ժողովոյ կողմէ եղած ստիպումներէն և խոստացուած աջակցութենէն քաջալերեալ, միանգամայն ազգին ծառայութիւն մը յօժարակամ յանձն առնելու սրտաւորեն յարգել ուզելով՝ առանց վարանման ձեռնարկեց ի գործ :

Արդ, որովհետև Սահմանադրական տարեգլխին առթիւ կը լրանայ նաև Տնտեսական Խորհրդոյ պաշտօնավարութեան թուականը, Տնտեսական Խորհուրդը չուզէր մեկնիլ, առանց հակիրճ կերպիւ իւր համարատուութիւնն, ինչպէս օրէն է, ներկայացնելու Ձեր Սրբազնութեան, և Վարչական փոփոխութեանց կատարման պատճառաւ տարեգլխէն յետոյ երկու ամսոյ չափ ևս իւր պաշտօնին վրայ կանգուն մնալով, կը փութայ մատուցանել իւր գործառնութեանց համարատուութիւնն և մանաւանդ Կեդր. սնտուկին ելմտական վիճակին վրայ, որ յոյժ ձգտեալ կերպարանք մ՚առած էր, երբ ձեռք առաւ իւր տնտեսութեան պաշտօնը:

Թէ՛ իրերն ինչ վիճակի մէջ էին, երբ Տնտես. Խորհուրդը Քաղ. Ժողովոյ փառաւորութենէն պատուեալ ի պաշտօն կոչուեցաւ. գէթ յարևանցի բացատրութիւն մը տալու համար պիտի ներէ անշուշտ Ձեր Բարձր Սրբազնութիւնն որ ակնարկ մը ձգենք անցելոյն վրայ :

Երբ Տնտեսական Խորհուրդն իւր նախորդին հրաժարականէն յետոյ՝ ձեռնարկեց պաշտօնին, տեսաւ՝ որ իրեն յատուկ գործերէն դուրս խել մը զանազան գործեր, որոց մէջ են՝ Ելևմտից և Կտակաց Հոգաբարձութեանց պաշտօնները, իւր վրայ ծանրացեալ էին, և ստիպեալ կը տեսնէր ինքզինքն այս կրկին պաշտօնները միաձոյլ վարել իւր տնտեսական ծանրաբեռն պաշտօնին հետ, տեսաւ՝ որ այդ գործեր շփոթ վիճակ մ՚առած էին, և թղթերէն ոմանք թափուր և ոմանք անկանոնութեան մէջ, տեսաւ՝ որ այս և այն բազմաթիւ անպաշտօն անձինք

յանուն Ազգին դպրոցաց և եկեղեցեաց ինչն ինքնին հանգամանկութիւններ կը կատարէին նուիրատուներու և գանձանակաց միջոցաւ, տեսաւ՝ որ կտակներ՝ անգործադրելի թողուած էին կտակարար բարերարաց կամքին հակառակ, և առ այս բազմաթիւ բողոքներ և տրտունջներ անհամբեր տնօրէնութեան կ'սպասէին, տեսաւ՝ որ անհատներ կառավարութեան դիմած էին այս և այն ազգային հաստատութենէն և Եկեղեցիներէն ունեցած պահանջքնին ձեռք բերելու համար, և այս դատեր ծանր կերպարանք առած էին, կային Թաղեր որք ոչ միայն անհրաման փոխառութիւններ և կալուածական շինութիւններ կը կատարէին, այլ և Եկեղեցական սպասներ և անօթներ ի վաճառ հանած էին, առանց կանխաւ Ազգ. Կեդր. Վարչութեան հաւանութիւնն ստանալու, և այսպիսի յոռի մատակարարութեամբ Թաղային գործերն լքանելէ զկնի կը թողուին և կը փախչէին. այս ամենուն հետ տեսաւ խել մը անխուսափելի ելմտական գործեր, ընդ որս թըւոք իբր 259 անտեսական՝ կտակային և այլ խնդրոց կոյտ մը ժառանգ կը մնար իրեն հետեւեալ բաժանմամբ.

| | |
|---|---|
| 10 | Հանրային |
| 32 | Կտակային և վագֆի |
| 100 | Թաղային և Ազգ. սեպհականութեանց |
| 80 | Մասնաւոր և ժառանգական |
| 37 | Գաւառական |
| 259 | |

որք տնօրէնութեան կ'սպասէին. այնպիսի ժամանակ մը, յորում Տնտես. Խորհրդոյ ձեռքերը կապուած և շարժմանց ազատութենէ սահմանափակ էր:

Սակայն Տնտես. Խորհուրդն առանց վհատելու սկսաւ միաձայն վարել վերոյիշեալ բազմատեսակ պաշտօններն, զգաց թէ այս բազմաճղի գործոց՝ իւր անդամոց մէջ բաշխման դրութեամբ և եթ կարելի պիտի լինի առաջ և գոհացուցիչ լուծում մը տալ, բաժնեց զանոնք իրենց տեսակին կարգաւ և յանձնեց իւր անդամակցաց, որք խորհրդոյ զբաղմանց ժամերէն դուրս իմաստասիրեն և տեղեկագրով մը ներկայեն խորհրդոյ որոշմանն: Եւ այսպէս Տնտես. Խորհուրդն միջոց ունեցաւ՝ արդէն դիզուած խնդրոց տնօրէնութեանց հետ՝ կարգադրել նաև հանրական և իւր պաշտօնավարութեան միջոցին ներկայացեալ 500էն աւելի խնդիրները:

Տնտես. Խորհուրդն իւր պաշտօնավարութեան շրջանին մէջ ՂԴ. նիստեր ունեցած է, և իւր Դիւանէն ելած պաշտօնական գրութեանց թիւն յանգած է 1300ի, յորոց 920ը տնտես. և 400ի չափը ելմտական խնդրոց կը վերաբերին. սոյն գրութեանց պարունակութեան բովանդակութիւնն ընել աւելորդ համարելով ի բաց կը թողու նաև սոյն խնդրոց յիշատակութիւնն, որ հանրական կարևորութիւն չունին, և անոնց մէկ ցուցակն ի վերջ տեղեկագրոյս անցնելով կը բաւականայ:

Արդ Տնտես. Խորհուրդն իւր գործերը կը բաժանէ չորս մասերու և կ'սկսի համառօտութեան:

# ՄԱՍՆ Ա.

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

1. ԱԶԳԱՅԻՆ ՍԵՓՀԱԿԱՆՈՒԹԻՒՆՔ. — 2. ԱԶԳԱՅԻՆ ՀՆՈՒԹԻՒՆՔ. — 3. ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՔ. — 4. ՑՕԿՈՍ ՓՈԽԱՌՈՒԹԵԱՆՑ. — 5. ԱԶԳ. ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆՔ. — 6. ԱԶԳԱՅԻՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆՑ ՀԱՇԻՒՆԵՐ.

### 1. ԱԶԳԱՅԻՆ ՍԵՓՀԱԿԱՆՈՒԹԻՒՆՔ

Ի վաղ ժամանակաց Ազգային Վարչութեան ուշադրութիւնը գրաւող այն կարեւոր խնդիրն ոչ նուազ հոգ և զբաղում պատճառեց նաև Տնտես. Խորհրդոյ ։

Տնտես. Խորհուրդը մէկ կողմէ աշխատեցաւ ի գլուխ հանել այն ձեռնարկն, զոր սկսած էին իւր Պատուարժան նախորդներն՝ Ազգային սեփհական կալուածոց արձանագրութեան մասին, միւս կողմէ նոյն կալուածոց՝ որք մեծաւ մասամբ անհատներու վրայ գտնըւելնուն զերծ չէին վտանգէ և ստէպ խնդիրներ ի վեր կելնէին, ապահովութեան համար հիմնական տնօրէնութեան մը անհրաժեշտ հարկն զգաց. հետեւաբար իւր նախորդին տըպագրել տուած վիճակագրական պատկերներն յատուկ շրջաբերականաւ մը հաղորդեց Մայրաքաղաքիս Թաղ. Խորհրդոց, և Եկեղեցեաց սեփհական կալուածոց վրայ տեղեկութիւններ պահանջեց, անոնց վիճակին և հանգամանաց վերահասու լինելու և միանգամայն արձանագրութեան գործն յաջող ածելու համար։ Այն յանձնարարութիւնը կրկնուեցաւ երիցս, որոց պատասխանեցին՝

Էյուպ Սուրբ Աստուածածին
Գէօյիւկ տէրէ
Եէնի գաբու
Նոր գիւղ
Գուրու չէշմէ
Կէտիկ բաշա
Տիվրիկլի Կալծ. Հօգաբարձութիւն
Թօփ գաբու
Իւսկիւտար Ս. Կարապետ
Բեբեկ
Չիւանգանոցի Հոգաբարձութիւն
Պէշիկթաշ
Ֆէրի գիւղ
Ալէմ տաղի
Մայր Եկեղեցի
Խասգիւղ
Գարակէօմրիւկ
Գասըմ բաշա
Գատը գիւղ

Իսկ՝ Էյուպ Ս. Եղիա
Գալաթու Եկեղ. և Դպրաց Ընկ.
Այիաստէֆանօ
Մաքրիգիւղ
Ազատլը
Սամաթիա Ս. Գէորգ Եկեղ. և Դպրաց Ընկ.
Սամաթիա Նոր Թաղ
Նարլը գաբու
Գումգաբուի դուրս
Ղալաթիա
Միջագիւղ
Ռումէլի Հիսար
Գօյաճի գիւղ
Պէյքօզ
Գանտիլլի
Գուզկունճուք
Իւսկիւտար Ս. Խաչ
Գարթալ
Գնալը կղզի
Մայր Եկեղ. և Դպրաց. Ընկ.

բոլորովին լռութիւն պահեցին. Հետեւաբար այս անտարբերութեան պատճառաւ Տնտես. Խորհուրդն իւր պաշտօնավարու-

թեան ամբողջ շրջանին մէջ չկրցաւ կալուածական արձանագրութեան գործը լրացնել, և ոչ ալ կրցաւ անոնց ապահովութեան ամեն կարևոր նկատուած տեղեկութիւններն ամփոփել պատշաճ եղանակաւ մը։

Ցայտնի է թէ Ազգային սեփականութիւնք զուրկ են ապահովութեան պայմաններէն և անհրաժեշտ է հաստատուն հիման մը վրայ դնելով ապահովել զանոնք և պաշտպանել անվտանգ։ Այս փափաքանօք Տնտես. Խորհուրդը իր սկսած վիճակագրական ձեռնարկութիւնը լրացնելու ջանքը մէջ՝ առաջարկեց Քաղ. Ժողովոյ, որ բարեհաճի իրաւագէտ ազգայիններէ կազմուած մի Յանձնաժողովի հետ խորհրդակցութեամբ ապահովութեան միջոցներն ընդ հուպ տնօրինել, ուստի սոյն ապահովութեան մասին ալ հարկադրուած էր սպասել Քաղ. Ժողովոյ ընդ Յանձնաժողովոյ ունեցած խորհրդակցութեան և Բ. Դրան հետ բանակցած բանակցութեան արդեանց, անտարակոյս լինելով որ այլ և այն խնդիրն իր լուծումն կ'առնու։

Ազգային սեփականութեանց ապահովման պայմաններէն միոյն էր նաև ապահովագրութիւնը (սիկուրթա)։

Մայրաքաղաքիս Թաղ. Խորհուրդները նախորդ Տնտես. Խորհրդոյ կողմէ, կարևոր հրահանգներով յանձնարարութիւն ընդունած էին առ հասարակ ապահովագրել Ազգ. հաստատութեանց սեփական անշարժ կալուածները։

Այս մասին թաղերէն հասած պատասխաններն անգոհացուցիչ էին և ներկայացեալ առաջարկութիւններն՝ ընդունիլ կամ մերժել ո՛չ Եկեղեցեաց սնտուկներուն և ո՛չ ազգային կալուածոց արդի անապահով վիճակներն կը ներէին։

Արդարև անհրաժեշտ էր և զգալի Ազգային կալուածոց ապահովագրութեան խնդիրն և Տնտես. Խորհուրդն երկար մտածումներ ունեցաւ գտնելու համար այնպիսի միջոց մը, որ մի՛ դիւրամատչելի լինի Թաղ. Խորհրդոց և Թ Ազգ. հաստատութեանց սնտուկներն հեռի պահէ մեծամեծ ծախքեր ընելէ, և հոն յանգեցաւ իր կարծիքն, թէ փոխանակ ապահովագրութեանց ընկերութիւններու դիմելու, թաղային սնտուկներն թեթև վճարման մը ենթարկուին և իւրաքանչիւրը սահմանեալ տարեկան տուրք մը վճարելով իր հասութից վրայ, արդիւնքը պահուի ապահով և շահաբեր եղանակաւ մը, և անով հայթայթուի հրկիզեալ կալուածի մը վերաշինութեան ծախքն։ Սակայն Տնտես. Խորհուրդն իր բաղձացած վիճակին մէջ ժամանակ չկրցաւ գտնել խորհելու և իր ծրագիրը պատրաստելով մատուցանելու Ձեր Բարձր Սրբազնութեան։ Կը մնայ ուրեմն յաջորդ Տնտես. Խորհրդոյ՝ իր առաջին զբաղումներէն մին ընելով սոյն խնդիրը հասնիլ փափաքուած հետևանքին։ Սակայն ամեն պարագայի մէջ անհրաժեշտ է, մինչև որ նոր կարգադրութիւն մը լինի, գէթ օրինի ապահովագրել, Ազգ. կալուածներն, և այս մասին անտարբեր գտնուողներուն տարակոյս չկայ թէ, պատասխանատուութիւն պիտի հրաւիրուի իրենց վրայ։

Տնտես. Խորհուրդը մէկ կողմանէ Ազգ. սեփականութեանց ապահովման մասին մեծ հոգածութիւն նուիրելով հանդերձ, միւս կողմէ կը տեսնէր որ թաղերէն ոմանք՝ իրենց հաստատութեանը վաքֆին մահլուլ ինկած կալուածներն սկսած էին իրր եկամուտ գործածել, փոխանակ վաճառելու, և այսպէս վաքֆ հասոյթից աղբիւրները ցամքեցնել, զրկելով զայն ֆերաղէ, Ինթիքալի և Իճարէի շահերէն, և որ առաւել մեծն է՝ մահլուլներէ, յորոց կրնան ենթարկուիլ կալուածք պարբերաբար։

Տնտես. Խորհուրդն Թաղ. Ժողովոյ որոշումն առնելէ յետոյ 1885 Ապրիլ 9 թուական շրջաբերական գրով մը հրաւիրեց բոլոր Թաղ. Խորհուրդները, Հոգաբարձութիւններն և Դպրոց ընկերութիւններն, որ Ազգ. հաստատութեանց վաքֆներէն մահլուլ ինկած կալուածներն իսկոյն ի վաճառ հանեն օրինաց համ_

մանին մէջ և հետք մնան իբրև կապուած պարտաւորէ ։

Սոյն աշխատութեանց դէմ, և ոչ մի Թաղ. Խորհուրդ կամ Հոգաբարձութիւն վաճառման առաջարկ ներկայացուց ։

## Զ. ԱԶԳԱՅԻՆ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Ազգային կալուածական սեփականութեանց արտօնման խնդիրն ոչ նուազ կարևորութիւն ունէր նաև Ազգային Հնութեանց պահպանման խնդիրն, որ բաւական զբաղեցուց Տնտես. Խորհուրդն, և գանձք յափշտակութենէ և կորուստէ զերծ պահելու և ապահովութեան միջոցներ առնելու համար անձամբ Թաղ. Ժողովոյ ներկայանալով անմիջական տնօրէնութիւն խնդրեց, և պահանջեց որ գաւառները շրջաբերական դրկուի, որպէս զի հնութիւններ չվաճառուին առանց Կեդր. Վարչութեան կարծիքն առնելու ։

## Է. ԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՔ

Ազգ. Եկեղեցեաց եւ դպրոցաց օգնելու նպատակաւ շատ մը ընկերութիւններ կազմըւած էին, որոցմէ շատերը ժամանակէ մը յետոյ գոյութիւննին կորսնցնելով, անոնցմէ ոմանց ստացուածքն յափշտակուելով միջոցի մէջ և ոմանց ըստ դատաստանաւ կը գտնուէին, ոմանց ստացուածքն ալ փճացած և անհետացած էր թողուածին և ոմանց այս և այն մասնաւոր անձանց քով կը գտնուէր, նորահաստատ ընկերութիւններ կը փութային իրենց կանոնագիրն վաւերացնելու Ազգային Պատրիարքարանի և այդ ընկերութիւններն, որ ազգին անուամբ կը կազմուէին և իրենց պարտաւորութիւններն կատարելութիւն ունէին ազգին հետ, ազգին համար տալու անփոյթ կը գտնուէին և կը հաշտուէին խոկ ։

Տնտես. Խորհուրդն այս խառնաշփոթ վիճակին վերջ տալու նպատակաւ ընկերութեանց կանոնագրի վաւերացման կէտն ալ իւր նկատողութեան առնելով հարկ զգաց այդ ընկերութեանց նպատակը ճշդելու, անոնց յարաբերութեան՝ իրաւասութեան և գործառնութեանց սահմանը գծելու համար մի հրահանգ պատրաստել. Հետեւաբար Տնտես. Խորհրդոյ առաջարկութեամբ և Թաղ. Ժողովոյ հաւանութեամբ Խառն յանձնաժողովն մը կազմուելով ծրագրուեցաւ հրահանգ մը, որ ներկայացուեցաւ Խառն Ժողովոյ ի վաւերացումն, սակայն դժբախտաբար Խառն Ժողովոյ դիւանի խնդրոց շարքին մէջ անհետանալով Տնտես. Խորհուրդն ակամայ առիթ ունեցաւ սոյն կարևոր խնդիրն թողուլ իւր յաջորդին ։

Իսկ միւս կողմանէ Տնտես. Խորհուրդն անպատեհ դատելով որ, խափանեալ ընկերութեանց ստացուածքն այլ ևս մնայ մասնաւոր անհատներու տրամադրութեանը տակ, հարկ համարեց երևան բերել ազգին ստացուածքն, գանձել, պահպանել, և ի հարկին ազգին օգտոյն գործածելու համար բանակցութեան մտնել ընկերութեանց հիմնադրաց կամ աւանդապահ անձանց հետ, և այս մասին իւր աշխատութեանց արդիւնքն են ։

Տնտեսական Ընկերութիւն. — Ֆէրիգիւղի Թաղ. Խորհուրդը հետամուտ էր տէր կանգնիլ սոյն ընկերութեան ստացուածոց, տեղեկագրելով որ իւր գոյութիւնը կորուսած է նա, և ստացուածքը կը մնայ զանազան անձանց քով ։

Տնտես. Խորհուրդը յետ քննութեան վերահասու եղաւ որ, յիշեալ ընկերութիւնը 1860 թուականին հաստատուած էր, Ֆէրի գիւղի մէջ գիշերօթիկ վարժարան մը հաստատելու նպատակաւ և սոյն նպատակին իրագործելու համար 35 տարի սահմանեալ պայմանաժամ մ'ունէր, յորմէնքն ընկերութիւնը պիտի տևէր մինչև 1895 թուականն, թէ' ընկերութիւնն ըստ իւր

*կանոնագրի՝ չարունակութեան մէջ կը գտնուէր, մանաւանդ որ դրամագլուխն անբաւական էր իւր նպատակին գործադրման, թէ ընկերութեան դրամագլուխն ապահովեալ էր Կիւմիւշեան Ազնիւ. Յովհաննէս Էֆէնտի բարեհամբաւ դրամատէրին քով և թէ 1883 տարւոյ հաշուեցոյցն Ազգային Վարչութեան մատուցեալ և գոհացուցիչ գտնուելով՝ վաւերացեալ էր :*

*Տնտես. Խորհուրդն իւր քննութեան առթիւ ստացաւ նաև Ընկերութեան 1884 տարւոյ հաշուեցոյցն, և տեսաւ որ Ձէրի գիւղի Թաղական Խորհրդոյ յայտարարութեան հակառակ, ընկերութեան գոյքը չհաւաքութեան վիճակի մէջ կը գտնուի և 1884ի հաշիւն 1883ի հետ բաղդատմամբ արդիւնաւոր էր հետևեալ կերպիւ.*

| | |
|---|---|
| *Դրամագլուխ 1883 տարւոյ սկիզբն* | 16443, 80 |
| *Դրամագլուխ 1884 տարւոյ սկիզբն* | 17985, 85 |
| *Յաւելեալ դրամագլուխ* | 1542, 5 |
| *(Մանրամասնութիւնք)* | |
| *Կիւմիւշեան Ազնուաշուք Յովհաննէս էֆ·ի քով պատրաստ* | 10862, 60 |
| *Վէզիր խանի դուռը թիւ 64 սենեկին արժէքը* | 6373 |
| *Թիւ 1,579787 և 909078 երկ. արժեթղթերու արժէքը* | 417 |
| *Պատրաստ դրամ* | 333, 20 |
| | 17985, 85 |

*Հետևաբար Տնտես. Խորհուրդը վաւերեց 1834 տարւոյ հաշուոյ օրինաւորութիւնն :*

Ուսումնասիրաց Ընկ· ի Ձէրի գիւղ. — *Դարձեալ Ձէրիգիւղի Թաղ. Խորհուրդն սաէպ խնդիր կընէր իւր թաղին մէջ գտնուած յիշեալ ընկերութեան նկատմամբ, ծանուցանելով որ անգոյ վիճակի մէջ կը գտնուի և իբր 60,000 ղրշ·ի ելևմտից հաշիւ մը թողուն կը մնայ :*

*Տնտեսական Խորհուրդն այս մասին ինչ ինչ քննութիւններ ընելով և տեսնելով որ յիշեալ ընկերութիւնը ներկայացնող անձանց կողմէ պաշտօնական եօթնեակ ազդարարութեանց խափանական պատասխաններ կը տրուին, յանձնարարեց Բերայի Թաղ. Խորհրդոյն որ անդամոց մէկ երկու ազգայիններէ բաղկացեալ մասնախումբ մը կազմելով պաշտօն տայ անոր՝ տեղական քննութեամբ մը երևան հանել իրաց վիճակն և տեղեկագրով մը առաջի առնել Խորհրդոյս :*

*Թէև սոյն Մասնախումբն՝ կը կազմուի, սակայն ընկերութեան գործադիր ժողովն կը նախանջէ իւր համարը տալու և Մասնախումբը կը պարտաւորի Ընկերութեան վերաբերեալ մէկ արկղն Ձէրի գիւղի Թաղ. Խորհրդոյ միջոցաւ ձեռք անցնելով՝ ի Պատրիարքարան յուղարկել և ինքն հրաժարիլ պաշտօնէ :*

*Տնտես. Խորհուրդն որոշած է՝ սոյն արկղն Ընկերութեան յանձնելու՝ կոչել գործադիր ժողովոյ անդամներն որ գան ի Պատրիարքարան և պատրաստելով իրենց հաշիւներն մատուցանեն ըստ օրինի : Կը մնայ ուրեմն յաջորդ Տնտես. Խորհրդոյ սոյն համարատուութեան պաշտօնն և յիշեալ Ընկ. գոյից ապահովման խնդիրը :*

Հայկազեան Ընկերութիւն Գեշիկթաշի. — *Ազգային գրքեր տպագրելու նպատակաւ 1859 թուականին կազմուած յիշեալ Ընկերութիւնն իւր գոյութիւնը կորուսած, և անդամներէն Մեծ. Նէժէնիճեան Էֆէնտի գրաւոր տեղեկութիւն տուած էր Խորհրդոյս թէ այդ ընկերութիւնն իբր 500 ոսկւոյ դրամագլուխ մը թողած է, որ թէև տոկոսի դրուած է Մեծ. Խօրասանճեան Ալիքսան էֆ·ի քով, սակայն այս վերջինը տոկոս վճարելու պարտականութենէն հրաժարած և պատրաստակամութիւն յայտնած է յանձնել դրամագլուխն ըստ 6րդ. յօդուածի Ընկ. կանոնագրութեան:*

*Տնտեսական Խորհուրդը հետապնդելով խնդիրն՝ Ընկ. Ատենադպիր Յակոբ Ոսկան Էֆէնտիի տուած բացատրութիւններէն կը տեղեկանայ որ, յիշեալ դրամագլուխն երբեմն Տիւթուրի տպագրութեան, և ապա ի նպաստ Ազ-*

դային Հիւանդանոցի մի կալուածագնման յատկացնելու խորհուրդ մը առաջ գտած է թէև, սակայն ի վերջէ Ընկերութեան Նախագահին հակառակ համոզուելով՝ մերժուած և առ կախ թողուած է խնդիրն, և անոր պարագայի մէջ Ընկ. Ատենապետ Գեր. Տ. Խորէն Սրբազան Նարպէյի դիմել հարկ կը լինի։

Թէպէտև Տնտես. Խորհուրդն այս մասին չդադրեցուց իւր ջանքերն և կրկին պաշտօնագրերով և բանիւ յանձնարարութեամբ խնդրեց Ընկ. Ատենապետ Սրբազանէն որ Ընկերութեան հիմնադիրք ի ժողով հրաւիրելով՝ ընկերութեան դրամագլուխն շահաբերութեան վիճակի մէջ դնէ և կամ լուծէ զայն համաձայն իւր կանոնագրին, ըստ որում դադրած է շարունակութենէ, սակայն իւր ջանիցը հակառակ դեռ չկարողացաւ տեղեկութիւն մ'առնուլ ի պաշտօնէ, ի պատասխանի իւր ութ անգամ յղած պաշտօնագրոց։

Ա. Բ. Գ. եւ Ջնաշխարհիկ Ընկերութիւններն ի Գարակէօմրիւկ .—

Այս երկու Ընկերութիւններն բաւական ժամանակէ ի վեր իրենց գոյութիւնն կորուսած էին և ստացուածքնին կը մնար Խիւսովէրեան Գրիգոր, Ոսկերիչ Ցակոբեան Միքայէլ և Մխիկթեան Ռափայէլ անուն երեք տղայոց տրամադրութեանը ներքև։

Տնտես. Խորհրդոյ կատարած քննութիւնն երևան բերաւ որ յիշեալ երեք անձերը մսխած են Ազգին դրամը, և որովհետև կը դժկամակէին գոհացում մը տալ խնդրոյն, Տնտես. Խորհուրդն իւր ձեռք առած տղոց միջոցներուն շնորհիւ կրցաւ կարգադրութեան մը յանգիլ, և պարտականք յանձն առին ուր ուրեմն առ ամիս երկու Երկաթուղւոյ արժեթղթերու յանձնմամբ, վեցամսեայ միջոցի մէջ մարել և փակել իրենց հաշիւն։

Սակայն Տնտես. Խորհուրդն յիշեալ կարգադրութեան թուականէն մինչև իւր համարատուութեան ժամը՝ յորում 8 ամիսներ բոլորեցան, հազիւ կրցաւ չորս Երկ. արժեթղթեր առնուլ, որոց թիւերն են, 1789870, 1788666, 18033341, 201359 և տեսնելով որ պարտականք փախուստ կուտան, մերթ մին կամ միւսին վրայ թողլով պատասխանատուութիւնն և մերթ մին կամ միւսին Մայրաքաղաքէս բացակայութիւնը պատրուակ բռնելով, իւր վերջին նիստերուն մէջ որոշած է որ, եթէ սակաւ ինչ ժամանակ շարունակեն իրենց սոյն անհաճոյ վարմունքն, ի գործ դնել օրինաց տրամադրութիւնն, զոր իւր հրաժեշտին պատճառաւ առ հարկի կը թողու իւր յաջորդին։

Հայրենասիրական Ընկ. Խասգիւղի .—

Այս Ընկերութեան անդամոց ոմանց բողոքանաց համեմատ, Ընկերութեան ստացուածքը կորստեան վիճակի մէջ կը գտնուէր։ Տնտես. Խորհրդոյ կատարած քննութիւնն հակառակ արդիւնք մը երևան բերաւ։ Ըստ կանոնագրի ընկերութեան եւ 1880էն 1884ի մատուցուած հաշուեցոյցէն յստակ կերպիւ կը տեսնուէր որ, Ընկերութիւնը շարունակութեան մէջ է, և անոր ստացուածքն՝ որ 1379 ղուրուշ 30 փարայի գումար մը կը կազմէր, ապահովեալ կը մնար իւր Գանձապետին քով, որ ըստ վկայութեան Խասգիւղի Թաղ. Խորհրդոյ՝ վստահելի անձ մ'էր։

Միայն արժան է դիտել որ, հաշիւներն անվաւեր կը մնան, հաշուետուութեան մատուցման մասին տեղի գտած զանցառութեան պատճառաւ։

Քառասուն Մանկանց Ընկ. Սեբաստիոյ.—

Սեբաստացի ազգայնոց կողմէ մատուցեալ բողոքագրի մը համեմատ յիշեալ կազմալուծեալ Ընկ. ստացուածքն եղած 11 հատ Երկ. արժեթղթերն անհատի մը քով կը գտնուէին։

Թէև Սեբաստիոյ Գեր. Առաջնորդն զեկուցած էր թէ, յիշեալ արժեթղթերու փոխարէնը վիճակին Սինեքերիմեան Ընկ. յանձ-

նըւած է , սակայն բողոքարկու անձինք չներ-կայացան միւսանգամ եւ խնդիրն մնաց ի մը-թան :

Ամասիոյ Սիմ-հաճի գիւղի Ընկերութիւն.—

Տնտես. Խորհուրդը տեղեկացաւ որ Սիմ-հաճի գիւղի ազգայինք ժամանակաւ ի Պոլիս Ընկերութիւն մը կազմելով, հաւաքեալ դրա-մով՝ գիւղին Եկեղեցւոյն եկամուտ աղբիւր մը լինելու նպատակաւ՝ ի Պոլիս երկու կալուածներ գնոյ կառնուն եւ մին Դանիէլ Ղուկասեան եւ միւսն Սահակ Գոյնուզալընեան անձանց վրայ դարձնելէ յետոյ, ասոնցմէ մին կը վախճանի եւ միւս Դանիէլ ի կեանս լինելով կը պարտաւորի ոչ միայն յանձնել կալուածն ազգին, այլ եւ տալ յիշեալ երկու կալուածոց վարձքերուն 11 տարուան մատակարարութեան եւ Ընկերու-թեան դրամոց հաշիւն : Թէեւ նախորդ Տնտես. Խորհուրդը բաւական կզբաղի յիշեալ խնդրով, սակայն Դանիէլ միշտ խոյս կուտայ համարա-տուութենէ եւ կալուածն կը պահէ իւր վրայ . նախորդ Տնտ. Խորհուրդը կը յաջողի միայն կալուածական մատակարարութեան տումարներ պարունակող արկղն ի Պատրիարքարան բերել տալ :

Տնտես. Խորհուրդս սոյն խնդրով ընդ եր-կար զբաղելով՝ կալուածն գիւղին Եկեղեցւոյն անուան Ֆերագ ընել տուաւ , իսկ հանգուցեալ Գոյնուզալընեանի վրայ գտնուած կալուածն այս եղանակին վերածելու համար յանձնարա-րեց գիւղին Թաղ . Խորհրդոյն , որ հանգու-ցելոյն ժառանգորդաց կողմէ հէօճճէթ մը պատրաստելով ղրկէ ի Պոլիս : Գալով հաշուա-կան խնդրոյն , Տնտես. Խորհուրդը չկրցաւ լուծում մը տալ, Դանիէլի վերահաս հիւան-դութեան եւ մահուանը պատճառաւ , եւ այժմ նոր գործակալ մը կարգուած լինելով՝ ապա-գային թերեւս կարելի լինի կարգադրել նաեւ հաշուական խնդիրն :

Վանայ Կարճկան գաւառի Նղեգես գիւ-ղի դրամը . —

Տնտես. Խորհուրդը տեղեկութիւն կառ-նու որ 6 տարւոյ չափ առաջ ի նպաստ Նղե-գես գիւղի Ս. Գէորգայ Վարժարանին մի Ըն-կերութիւն կը կազմուի, եւ սոյն Ընկերութեան թէ գանձանակի եւ թէ ուրիշ եղանակաւ հա-ւաքած դրամներն մասնաւորաց քով փճանա-լու վիճակի մէջ կը գտնուին , ուստի պարտա-տէրներէն ի Մայրաքաղաքս գտնուող անձինքն հետզհետէ հարցաքննութեան կենթարկէ , դրամին մէկ մասը կը գանձէ եւ դեռ մնացելոյ՝ որոց պարտուց քանակութիւնը յայտնի չէ , գանձման տնօրէնութեամբը կզբաղի . միւս կողմէ ի շրջաբերութեան գտնուած գանձանա-կը իւր կնքոյն եւ հսկողութեանը ներքեւ առ-նելով՝ արդիւնքն ի պահ կը դնէ Պատրիարքա-րանի աւանդից արկղն :

Տնտ. Խորհուրդն ամբողջ դրամներն գան-ձելէ ետեւ՝ բանակցութեամբ ընդ Գեր. Ա-ռաջնորդին Վանայ , դրամն ամբողջովին իւր նպատակին պիտի յանձնէ :

Շապին Գարահիսարի վարի Ածպըտեր գիւղի Ընկերութիւնը. —

Ածպըտէր գիւղացիք 5 տարի առաջ Պոլիս Ընկերութիւն մը կազմած լինելով մի քանի գիւղացւոց վրայ գտնուած Ընկերութեան դրամներն ձեռք բերելու նպատակաւ կը դիմեն Տնտես. Խորհրդոյ, որ քննութեան միջո-ցին կը տեղեկանայ թէ , այդ Ընկերութիւնը գիւղին Վարժարանին նպաստելու նպատակաւ կազմուած է թէեւ , սակայն իւր նպատակին հակառակ ազգէն հանգանակած դրամ. փո-խատուութեան յատկացուցած եւ կորուստի ենթարկած էր :

Տնտես. Խորհուրդը կ՚սկսի զբաղիլ այդ դրամոց գանձման , եւ մէկ մասն քարա-պանոց միջոցաւ ձեռք անցուցած եւ պահ-պանած լինելով՝ մնացելոյն գանձումն կը վե-րապահէ իւր յաջորդին , որ պիտի գործածէ այդ դրամներն՝ վիճակին Գեր. Առաջնորդէն հասած կրկին գրութեանց համեմատ , որք կը մնան Տնտես. Խորհրդոյ Դիւանին մէջ :

Իսկ այն Ընկերութիւններն, որք այսօր գոյութիւն ունին եւ շարունակութեան մէջ են, սովորութիւն չեն ըրած իրենց գործառնութեանց հաշիւներն՝ ինչպէս օրէն է, ամ ըստ ամէ մատուցանել Տնտես. Խորհրդոյ ։ Առ այս հարկ եղած զարմանը տանելու համար, անհրաժեշտ էր մի մասնաւոր օրէնք, զոր Տընտեսական Խորհուրդն՝ ինչպէս նշանակուած է ի վերեւ՝ Յանձնաժողովի մը աջակցութեամբ թէեւ ծրագրած եւ մատուցած էր Խառն Ժողովոյ, եւ կը բաղձար ի ձեռին ունենալով զայն՝ ըստ այնմ յիշեալ Ընկերութեանց իրաւասութեան սահմանները ճշդելու, սակայն ցաւ է իրեն որ, իւր պաշտօնավարութեան շրջանին մէջ չյաջողուեցան իւր իղձերն այս մասին, բայց անմխիթար չմեկնիր, յոյս մեծ ունենալով որ, իւր յաջորդն՝ ուշադրութենէ չպիտի վրիպեցնէ այս կարեւոր խնդիրն, եւ զայն ի կատար հանելու բարեբաղդութիւնը պիտի ունենայ ։

Այս Ընկերութեանց շարքէն դուրս կը գտնուին Իւսկիւտարու Թաղին մէջ հաստատուած Բարեգործական եւ Աղքատախնամ երկու ընկերութիւններն, որոց կանոնագրերն վաւերացեալ են Տնտես. Խորհրդոյ կողմէ, եւ որոց հաշուեցոյցերն շարունակաբար ամեն տարի կը մատուցուին ըստ օրինի, ինչպէս կը տեսնուի ի տեղեկագրոյս ։

Բաց ի սոյն Ընկերութիւններէն Տնտես. Խորհուրդն ուշադրութեան առաւ նաեւ,

Արուեստասիրաց լուծեալ Ընկերութ. —

Այս Ընկերութեան դէմ մասնաւոր անձինք կառավարութեան առջեւ դատ բացած, եւ պահանջքի խնդիրներ յարուցած էին, իսկ Ընկերութիւնն իբրեւ մի Ազգային մարմին, Պատրիարքարանի պաշտպանութեանը դիմած էր, խնդրոյն վրայ լոյս մը տալու նպատակաւ միայն իւր հաշիւները մատուցանելով ։

Տնտեսական Խորհուրդը հաւատ լինելէ յետոյ որ, յարուցուած դատն մի դատախազակի կողմէ տեղի գտած է, եւ սա՝ յիշեալ Ընկերութեան ընդ նախորդ Վանօրէից Խորհրդոյ կնքած մէկ պայմանագրին համեմատ, Մշոյ Ս. Առաքելոց Վանուց մէջ բացուած արուեստական վարժարանին դասատու գտնուելով ամսականաց պահանջք մը գոյացուցած է, որ է նիւթ իւր դատին, եւ նկատելով որ ըստ կնքեալ պայմանագրի Վանքն եւ Ընկերութիւնն իրենց հաշիւները Վանօրէից Խորհրդոյ տալ կը պարտին, բանաւոր կը համարի նոյն Խորհրդոյ յղել խնդիրն ։

Ատանայի Եկեղեաց Ընկերութիւն ։

Ատանայէն՝ ի նպաստ տեղւոյն դպրոցաց հացկերոյթէ մը գոյացեալ 6000 ղրշ. գումար հասոյթին ապահովութիւնը կը խնդրուէր, սա պատճառաբանութեամբ թէ, մի քանի անձինք՝ իբր Քաղաքական ժողով տեղւոյն՝ կը ջանան ձեռք անցունել յիշեալ գումարն, հակառակ իւր նպատակին՝ ուրիշ պիտոյից յատկացունելու համար ։

Տնտես. Խորհուրդն Ընկ. կողմէ ցոյց տրուած պատուաւոր ազգայնոյ մը միջոցաւ ապահովեց նշանակեալ գումարն, հրահանգ տալով որ պահէ զայն, մինչեւ որ Սահմանադրապէս կազմուին եւ վաւերանան տեղւոյն Ազգ. ժողովներն եւ որոշուի դրամին գործածութեան եղանակը ։

Նորահաստատ Դպրաց Ընկ. Ենիգաբուի—

Սոյն Ընկերութիւնն իւր կանոնագիրը մատուցած ըլլալով ի վաւերացումն, Տնտես. Խորհուրդն թէեւ գովելի գտաւ Ընկերութեան նպատակն, սակայն նկատելով որ կանոնագրին մի քանի. յօդուածոց տրամադրութեան համեմատ Ընկերութիւնն Եկեղ. զարգացման նպատակն ունի, եւ հետեւաբար Կրօն. հանգամանք մը, հարկ զգաց կանխաւ յղել զայն Կր.օն. ժողովոյ, որ ի կրօնականս հարկ եղած տնօրինութիւններն ընելէ յետոյ՝ հաճի վերա-

*դարձնել Տնտես. Խորհրդոյ դրամական մասերը անօրինելով վաւերելու համար ։*

*Սոյն կանոնագիրը դեռ վերադարձած չէ կրօն. Ժողովոյ Դիւանէն ։*

**Սեբաստիոյ Զառայ գիւղի Լուսաւորչեան Ընկերութիւն .**

*Պոլիս գտնուող Զառայի ազգայինք իրենց գիւղին Եկեղեցւոյն եւ Վարժարանին ծախսուց նպաստելու եւ այն կրկին հաստատութեանց զարգացման եւ բարգաւաճման միջոցներն հայթայթելու նպատակաւ մի Ընկերութիւն կազմած , եւ կանոնագիրն Տնտես. Խորհրդոյ քննութեանն ներկայացուցած ըլլալով Տնտես. Խորհուրդն գովելի գտաւ Ընկ. Նպատակն եւ ի՛նչ ի՛նչ բարեփոխումներն ընելով վաւերեց կանոնագիրն Մայիս 22 Թուականաւ ։*

**Իսկիւտարի Բարեսիրական Ընկերութիւն.**

*Նոյնպէս վաւերեց Սելամսըզ Թաղին մէջ հաստատուած սոյն ընկերութեան կանոնագիրն, տեսնելով որ Թաղին երկսեռ վարժարանաց նպաստելու գովելի նպատակն ունէր ։*

**Ներսէս–Վարժապետեան Ուսում. Ընկ. կանոնագիրը .**

*Յիշեալ ընկերութեան հիմնական կանոնագիրն 11 Նոյ. 1884 Թուականաւ Ձեր Բարձր Սրբազնութեան յանձնարարութեան համեմատ Տնտես. Խորհուրդն նկատողութեան առնլով՝ ընդունելի գտաւ զայն, և իր մէկ դիտողութեամբն վերադարձուց առ Ձեր Սրբազնութիւն ։*

*Այս ընկերութեան նպատակն էր , ի պատիւ Հոգելոյս Ներսէս Պատրիարքին , կանգնել վայելուչ շիրիմ մը Մայր Եկեղեցւոյ մէջ , իւր գերեզմանին վրայ, և բանալ անոր անուան նըւիրեալ Ուսումնարան մը , ուր ընդունուին տեղացի և գաւառացի աշակերտներ գիշերօթիկ և ցերեկեայ ։*

**Դ. ՏՈԿՈՍ ՓՈԽԱՌՈՒԹԵԱՆՑ**

*Տնտես. խորհուրդն իւր պաշտօնավարութեան առաջին օրէն՝ Ազգային հաստատութեանց սնտուկներուն կողմէ ղանազան առթիւ վճարեալ տոկոսներուն քանակութիւնը խնդիր ըրաւ , և տեսնելով որ մանաւանդ փոխառութեանց առթիւ % 12 և աւելի տոկոս վճարելու ենթակայ կը գտնուին ազգային սնտուկներն , որոշեց արտօնել այն փոխառութիւններն միայն , որ առ առաւելն 7 կամ 8 % տոկոսով կը կատարուին ։ Տնտեսական Խորհուրդն պատշաճ համարեց որ յիշեալ որոշումը տարածի նաև այն կտակաց վրայ , որ % մէկ կամ աւելի տոկոս վճարելու տրամադրութիւններ կը պարունակեն ։*

**5. ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆՔ**

*Ժամանակէ մ'ի վեր սովորութիւն եղած էր՝ յանուն Ազգին այլ և այլ հաստատութեանց նպաստ հաւաքելու համար, թէ՛ թաղերուն մէջ թէ՛ շուկաներն և թէ՛ ուրիշ հասարակաց վայրեր տոմսակներ ցրուելով՝ գանձանակներ պըտըտցնելով և այլ եղանակներով դրամ հանգանակել , առանց Կեդր. Վարչութեան ծանուցանելու հանգանակութեան նպատակն ։ Այս հանգանակութիւններն՝ որքան անկանոն, նոյնքան և բարեսէր ժողովրդեան ձանձրոյթ պատճառելու վիճակին մէջ կը գտնուէին , մինչև իսկ Մայրաքաղաքիս այլ և այլ կողմերը գանձանակ պտըտցնող անձանց վարմանց վրայ ծանր գանգատներ տեղի կունենային և հանգանակութեան գլուխ կանգնողներն ի հարկին չէին կրնար հաշիւ և բացատրութիւն տալ հանգանակեալ դրամոց քանակութեան և անոնց գործածութեան նկատմամբ ։*

*Տնտես. Խորհուրդն այս անտեղութեանց առաջքն առնլու համար գանձանակաց շըրջագայութեան մասին յատուկ Հրահանգ մը ծրագրեց և Կաղ. Ժողովոյ վաւերացմանն են-*

*թարկելով՝ գործադրութեան դրաւ զայն, որոյ օրինակն է .*

## Հրահանգ Գանձանակի շրջագայութեան .

Յօդուած 1° — *Այն մարմինները՝ որք գանձանակ շրջագայելու արտօնութիւն խնդրելու կը դիմեն, պարտաւոր են գրաւորապէս համակերպիլ նախ՝ սոյն հաստատեալ Հրահանգին, և ապա յայտնել թէ ի՞նչ հարկէ ստիպեալ կը հարկադրին հասութից այս արտասովոր միջոցին դիմելու, թէ ի՞նչ նպատակի պիտի ծառայեցնեն հաւաքեալ դրամն, թէ ո՞րքան ժամանակի կամ գումարի համար պիտի տեւէ գանձանակի շրջագայութիւնն և ո՞ւր տեղուանք պիտի շրջագայի :*

Յօդ. 2° — *Ըստ այսմ ներկայացեալ խնդիրներն ուշադրութեան կառնուին, և երբ ապահովլուին սոյն պարագայներն, ի վերայ խնդրագրի կ'արտօնուի գանձանակի շրջագայութիւնն, և մասնաւոր արտօնագիր մը կը յանձնուի՝ որ կը պարունակէ անունն այն ազգային հաստատութեան կամ մարմնոյն, որոյ ի նպաստ կը հաստատուի գանձանակը, շրջագայութեան տեղն ու պայմանները, շրջագայութեան տեղի տուող պատճառներն, գանձանակի թուահամարն, շրջագայութեան պայմանաժամն, հանգանակելի գումարին քանակութիւնն և այլ պայմանք եթէ կան · Սոյն արտօնագրերն մինչ տարւոյն Դեկտեմբեր 31 պայմանաժամաւ կը տրուին, և ի վերջ տարւոյն՝ եթէ հարկ տեսնուի՝ կը նորոգուին :*

Յօդ. 3° — *Սոյն արտօնագրէն զատ իւրաքանչիւր գանձանակի համար արտօնատոմս մը կը տրուի, որ կը փակցուի գանձանակին վրայ, և կը պարունակէ*

1. *Գանձանակին թուահամարն .*
2. *Անունն այն մարմնոյն կամ՝ հաստատութեան՝ որոյ ի նպաստ կը շրջագայի գանձանակն .*
3. *Արտօնագրի թուականն և թուահամարը .*
4. *Շրջագայութեան տեղիքն և պայմանաժամը .*
5. *Հաւաքչին անունն .*
6. *Արտօնատոմսին թուականն և թուահամարը .*
7. *Տնտեսական Խորհրդոյ կնիքն և ստորագրութիւնը :*

Յօդ. 4° — *Սոյն արտօնատոմսերն ամեն երկու ամիսն անգամ մը պիտի նորոգուին, որոյ թուականն և թուահամարը հետզհետէ պիտի նշանակուին արտօնագրի թղթոյ ի ստորեւ :*

Յօդ. 5° — *Գանձանակներն մասնաւորապէս Տնտեսական Խորհրդոյ ցոյց տուած ձեւովը կը շինուին միակերպ, և ապահովութեան ամեն երաշխաւորութիւն ընծայելու դիրքով :*

Յօդ. 6° — *Գանձանակաց բանալիներն Տնտեսական Խորհրդոյ քով ի պահ կը մնան, և գանձանակի բանալին տեղն կը կնքուի Տնտեսական Խորհրդոյ կնքով :*

Յօդ. 7° — *Մայրաքաղաքիս մէջ գանձանակաց շրջագայութեան արտօնութիւնը կը դրուի միմիայն Կեդրոնական Վարչութեան Տնտեսական Խորհրդոյ կողմէ, որ կարտօնէ միայն ի նպաստ ազգային հանրօգուտ մարմնոց և հաստատութեանց այն ատեն, երբ որ և է ազգային մարմին իւր առանձնած պարտականութեան կատարման մասին հարկ եղած դրամական միջոցներէն զուրկ գտնուին և գանձանակ շրջագայելու միջոցին դիմելու հարկադրեալ լինելն կարենայ ապացուցանել ի պաշտօնէ :*

Յօդ. 8° — *Գանձանակի արտօնութիւնն միշտ որոշեալ ժամանակի և երբեմն որոշեալ գումարի մը և որոշեալ տեղւոյ մը համար է, և Տնտեսական Խորհուրդն թէ՛ արտօնութեան թէ՛ շրջագայութեան և թէ՛ հաւաքեալ արդեանց և գործածութեան նպատակին վրայ ուղղակի և անուղղակի հսկողութիւն և համարատուութիւն կընէ :*

Յօդ. 9° — Գանձանակաց շրջագայութեան մասին տրուած իւրաքանչիւր արտօնագրի համար յիսուն դահեկան. դիւանական տուրք մը կառնուի յանուն Կեդրոնական Սնտուկին։

Յօդ 10° — Խնդրարկու մարմինը Տնտեսական Խորհրդոյ արտօնագիրը ձեռք բերելէ յետոյ՝ պէտք է որ գործունէութիւնն ու բարոյականը ծանուցանելու իւր հաւաքիչը ներկայացընէ, որ 100էն մինչև 500 ղրշ. պահեստի տալով պիտի ապահովէ Պատրիարքարանի միջոցաւ նպաստընկալ մարմինն։ Թաղական Խորհուրդք այս պարագային մէջ իրենք պատասխանատու են։

Յօդ. 11° — Հաւաքիչք պարտին ամեն երկամսեայ վերջին երկուշաբթի օրը գանձանակը ներկայել Տնտեսական Խորհրդոյ Դիւանին, ուր կը բացուի ի ներկայութեան համարակալին, Տնտեսական Խորհրդոյ դիւանադպրին, գանձապահին և հաւաքչին դրամը կը համրուի, համարակալին միջոցաւ մասնաւոր տետրի մը մէջ կարձանագրուի, և գանձապահին ձեռամբ կը յանձնուի հաստատութեան կամ անոր հրամանին հաւաքչին, եթէ գրաւորապէս արտօնեալ է։

Յօդ. 12° — Այն գանձանակներն՝ որոց կնիքն եղծուած և կամ կասկածանաց ենթակայ լինին և կամ սոյն հրահանգին հակառակ շրջագայութեան հանուին, յետ քննութեան կը պատժուի յանցաւորն, և գանձանակը կը դադրի շրջագայութենէ, ցնոր անօրէնութիւն։

Յօդ. 13° — Երբ հաւաքիչք վարձեալ լինին, զուտ հասից % 25 միայն վարձք ընդունելու իրաւունք ունին։

Յօդ. 14° — Յետ լրման արտօնագրի պայմանաժամուն, պիտի վերանորոգուին միայն այն գանձանակներն՝ որոց արդեանց և փոխարէն եղած ծախուց վաւերական հաշիւը ներկայացուի, նպատակին ճշգիւ գործադրութիւնը հաստատուի, և կասկածելի հանգամանք մը չունենայ։ Սոյն հաշիւներն կեդրոնական Համարակալին միջոցաւ գանձանակաց յատկացեալ տետրին մէջ պիտի օրինակուին։

Յօդ. 15° — Թէ՛ Ազգային Պատրիարքարանի և թէ՛ այլ Ազգային մարմնոց որոշմամբ Մայրաքաղաքիս մէջ մինչև ցարդ շրջագայող գանձանակք դադարելու և իրենց տրուած արտօնագրերն ջնջեալ լինելով՝ թուականէս մինչև մէկ ամիս պարտին ըստ հրահանգիս վարուիլ և բայց Տնտեսական Խորհրդոյ ոչ ոք ի մասնաւորաց կարող է արտօնել և շրջագայութեան հանել գանձանակ և այսպիսիներն պատասխանատու պիտի համարուին։

Յօդ. 16° — Սոյն հրահանգը կրնայ բարեփոխուիլ մէկ տարի յետոյ։

1884 Յուլիս 19

Ի դիմաց Տնտ. Խորհրդոյ
Ատենադպիր Ատենապետ
(Մ. Զօպանեան) (Գ. Գաբրիէլեան)

Ազգային Վարչութեան Քաղաքական Ժողովն սոյն հրահանգն իւր Սեպտեմբեր 12ի նիստին մէջ ընդունելով հաստատեց, և յանձնեց Տնտեսական Խորհրդոյ ի գործադրութիւն։

Պատրիարքական Փոխանորդ
Գէորգ Ծ. Վ. Ռուսճուգլեան

Ի դիմաց Քաղաքական Ժողովոյ
Վ. Ատենադպիր Ատենապետ
Գ. Գըլըճճեան Ս. Մագսուտեան

18 Սեպտեմբեր 1884
Ի Պատրիարքարանի Հայոց
Կ. Պոլիս

Սոյն հրահանգին համեմատ հետզհետէ արտօնուեցան հետևեալ հաստատութեանց ի նըպաստ գանձանակաց շրջաբերութիւնն՝

1. Էթ-Մէյտանի Թաղի Ազգ. վարժարան
2. Թօփգաբուի Եկղ. և »
3. Իսկ. Բարեգործական Ընկերութիւն
4. Խասգիւղ Աղքատախնամ »

5. Խիզանու Ուսումնասիրաց Ընկ․
6. Կեսարիոյ Ֆէնէսէ գիւղի վարժարան
7. » Էվէրէկ » »
8. Հիւանդանոցի հաստատութիւն
9. Ռումէլի Հիսարի վարժարան
10. Մաքրի գիւղի եկեղեցի
11. Նարլը գաբուի եկեղ. և վարժարան
12. Գօյածի գիւղի վարժարան
13. Սամաթիա Նոր Թաղի եկղ. և վարժր.
14. Սեբաստիոյ Խօշմաթ գիւղի »
15. Սամսոնոյ Ս. Գէորգ եկղ. և »
16. Վանայ Լեզք գիւղի »
17. Ֆէրի գիւղի եկղ. և »
18. Սեբաստիոյ Խորոխոն գիւղի եկղ.
19. » Ջառայ գիւղի վարժարան
20. Գամ փաշայի եկղ. և Վարժարանին
21. Գարակէօմրիւկ » և Վարժարանին
22. Վանայ Աւերակ գիւղի »
23. Գուզկունճուքի »
24. Բաղիշու Մոճկոնիկ գիւղի »
25. » Վանիկ » »
26. Գնալը կղզի »
27. Վանայ Հաւէնց գիւղի »
28. Իւսկ. Ազգասիրական ընկերութիւն
29. Քղիի Սոքացոր գիւղի Վարժարանին
30. Բարեսիրական Ընկ. Իւսկ.
31. Սեբաստիոյ Եէնիճէ Ֆէրէշէթ գիւղի Վարժարանին ,

Ընդ ամենն երեսուն և մէկ հաստատութեանց գանձանակներ , փոխանակ ինքնանէն աւելի գանձանակաց , որք յառաջագոյն ի շրջաբերութեան էին ։

Տնտես. Խորհուրդն այս կարգադրութիւնը հրատարակութեամբ հաղորդած և մինչև իսկ անհատներու իրաւունք տուած է, որ երբ կանոնաւոր արտօնագիր չկրող կամ պայմանաժամն սպառեալ արտօնագրերով գանձանակներ տեսնուին շրջագայութեան մէջ՝ գրաւեն զայն ։

Տնտես. Խորհուրդն այս տնօրէնութեան առթիւ արգիլեց ի շրջաբերութենէ այն նուիրատուներն , որ իւր պաշտօնական կնիքը չեն կրեր ։

Տնտես. Խորհուրդն հաւանութեամբ Քաղ. Ժողովոյ արտօնեց նաև հետևեալ հանգանակութիւններն ժողովելու տոմսով

Ի նպաստ

1. Արաբկիրի Կրանի գիւղի վարժարանի կալուածական շինութեանց ,
2. Աճէօլու—Գուրկաղի եկեղեցւոյ շէնքին նորոգութեան ,
3. Գաղատիոյ Տէնէկ մատէն գիւղի եկղ. շինութեան ,
4. Ագիղէ գիւղի եկեղեցւոյ և վարժարանին շինութեան ,
5. Գուրուչէշմէի եկեղեցւոյ կալուածական շինութեանց ,
6. Թօփգաբուի եկեղեցւոյ սեպհական կալուածի մը շինութեան ,
7. Բաղիշու Ցորդզոր գիւղի հողոյն մէկ պարտուց բարձման ,
8. Զմշկածագի Սխնա գիւղի եկղ. և վրժ. շինութեան ,
9. Մշոյ Խասգիւղի եկեղեցւոյ շինութեան

նուիրատուներով

Ի նպաստ

10. Հիսարու եկեղ. անտուկին պարտուց բարձման ,
11. Մշոյ Վարդենիս գիւղի վարժարանին զարգացման ,
12. Մոճկոնիկ գիւղի վարժարանին մատակարարութեան ։

Իսկ մերժեց քանի մը Թաղ. Խորհրդոց կողմէ՝ մասնաւորաց ի նպաստ նուիրատուներու միջոցաւ հանգանակութիւն կատարելու մասին ներկայացեալ առաջարկութիւններն ։

Ասոնցմէ զուրս կը գտնուին

Զէնփի գիւղի եկեղեցւոյն շինութեան լրման համար արտօնեալ հանգանակութիւնն , որոյ առաջին արդիւնքն 350½ ղրշ․ի քանակութեամբ գիւղին Թաղ. Խորհրդոյ կողմէ հանգանակող նշանակուած անձի մը ծախուց միայն գործածուած լինելով՝ ժողովելու տոմարն յուղարկուեցաւ Սեբաստիոյ Գեր. Առաջնոր-

դին, որ իր պատասխանատուութեանն ու հսկողութեանը ներքեւ այնու կատարէ հանգանակութիւնն եւ որդիները ծառայեցնէ ճիշդ իր նպատակին ։

Նոյնպէս ժամանակին գումար մը յանձնած էր ի նպաստ Սեբաստիոյ Խանչար գիւղի վարժարանին, եւ նոյն հանգանակութեան նկատմամբ մերթ ընդ մերթ բողոքներ կը ներկայացնային գիւղացւոց կողմէ ։

Տնտես. Խորհուրդը գումար եւ հաշիւ պահանջած է հանգանակող գիւղացիներէն, սակայն ցարդ ստացած չլինելով՝ իր յաջորդին կը վերապահէ այն խնդրոյն քննութիւնն, որ կարեւոր է ։

## 6. ԱԶԳ. ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆՑ ՀԱՇԻՒՆԵՐ

Ինչպէս բացատրեցինք քիչ մ'առաջ, Մայրաքաղաքիս Թաղերէն ոմանք Թախծոտ վիճակ մը առած, ոմանք անկանոնութեան մէջ եւ ոմանք կռուոյ եւ վէճի ասպարէզ դարձած են . որով Թաղ. Խորհրդոց ընդ Տնտես. Խորհ. ունեցած Սահմանադրական յարաբերութիւնն ուղղութեան մը մէջ չէր գտնուեր եւ ամեն պարագայի մէջ եղած յանձնարարութիւններն ազդեցութիւն մը չէին ըներ եւ անգործադրելի կը մնային, որու հետեւանքն եղած էր անխնամութիւն մը Թաղերու մէջ, ի վնաս ազգային հաստատութեանց տնտեսական վիճակին ։

Թաղ. Խորհուրդներն եւ այլ Ազգ. պաշտօնէութիւնք, որ ըստ Սահմանադրութեան պարտաւորութիւն ունին իրենց հսկողութեան յանձնուած Ազգ. հաստատութեանց տնտեսական եւ դրամական գործոց համարը ամեն տարի անվրէպ մատուցանել առ Տնտեսական Խորհուրդն, Խորհրդոյս պաշտօնավարութեան առաջին օրէն սկսեալ հրահանգ ընդունեցին իրենց ․ սոյն պարտաւորութեան կատարման մասին, եւ միայն հետեւեալները մատուցին իրենց հաշիւն ։

Բերա
Գուզկունճուք
Պէյլէրպէյի
Գնալը կղզի
Սամաթիա. Նոր Թաղ
Թօփգափու
Հիսար
Գարակէօմրիւկ
Ֆէրիգիւղ
Գումգափույի դուրս
Խասգիւղ
Գադըգիւղ
Մայր Եկեղեցի
Ղալաթիա
Էյուպ Ս. Աստուածածին
Նորգիւղ
Եէնիգափու
Գուրուչէշմէ
Պէշիկթաշ
Իւսկիւտար Նոր Թաղ
Սամաթիա, Ս. Գէորգ
Կէտիկփաշա
Միջագիւղ
Պալատ

Իսկ

Պէյգօզ
Գասըմփաշա
Ալէմտաղի
Իւսկիւտար Ս. Խաչ
Այիսթէֆանօ
Մաքրիգիւղ
Էյուպ Ս. Եղիա
Նարլը գափու
Պօյաճը գիւղ
Գանտիլլի
Գարթալ

Թաղերն ոչ հաշուեցոյց, եւ ոչ տեղեկագիր մատուցին ։

Յիշեալ Թաղերէն

Իսկ. Ս. Կարապետի 1884–85 տարւոյ

Պալատու
Գնալը կղզիի
Թօփգաբուի
Ֆէրիգիւղի
Գատըգիւղի
Մ. Եկեղեցւոյ

Թաղերու հաշուեցոյցերն դեռ ընդ դիտողութեամբ Թաղեցւոց կը մնան ։

Բերայի Թաղ. Խորհուրդն մատուցած էր նաև Եկղ. ատեանին 1835–86 տարւոյ ելմտացոյցն, զոր Տնտ. Խորհուրդն օրինաւոր և գոհացուցիչ գտնելով՝ իւր կարծեօքն վերադարձուց առ Թաղ. ժողովն, ընդունելով նաև Թաղ. Խորհրդոյ 500 ոսկւոյ մասին խնդրած վարկի առաջարկն, զոր բացած էր ելմտացոյցի յառաջիկայ տարւոյ բացը դիմաւորելու համար, և պիտի ստանար զայն Բերայի Կալուածոց Հոգ. ատենէն ամսական գրութեամբ ։

Տնտես. Խորհուրդը չկրնար գանգատիլ իւր նախորդին նման Թաղական Խորհրդոյ համարատուութեան մասին տեղի գտած զանցառութեանց մասին, տեսնելով որ անցեալն հետ բաղդատմամբ թէև ոչ ամբողջովին կամ տումարակալութեան կանոնաց պահանջած ոճովն ու ձևովը, սակայն մեծ մասամբ հաշիւ մատուցանելու ջանադիր գտնուեցան, և ակն ունի որ, յառաջիկայ տարեշրջանին Թաղական Խորհուրդներն ի նկատ առնելով միաձև և օրինաւոր տումարակալութեան նկատմամբ Տնտ. Խորհրդոյ տուած հրահանգներն՝ ըստ այնմ օրինաւորապէս համար տալու պարտաւորութիւնները ի գործ պիտի դնեն լիովին ։

Տնտ. Խորհուրդը ներկայացեալ հաշուեցոյցերուն պարունակութիւնն ամփոփած և ի վերջ տեղեկագրոյս անցուցած է ։

## Հաշուական խնդիրներ

Գուզկունճուք. — Այս Թաղի 1883-84 տարւոյ Եկեղ. ատեանին հաշուոց քննութեան առթիւ Տնտ. Խորհուրդը տեսաւ որ Թաղ. Խորհուրդն առանց հաւանութեան ստանալու Եկղ. Վարչութենէն, 7361 դրամ արծաթեղէն անօթներ վաճառած, և 27917,30 ղրուշի քանակութեամբ շինութեան ծախք մը կատարած է ։ Թաղ. Խորհրդոյ այն ատենի վարմանց վրայ Տնտ. Խորհուրդն ի բացատրութիւն հրաւիրելով զայն, և այս մասին տրուած բացատրութիւնք անբաւական դատելով՝ խնդիրն յայտագրուեցաւ Թաղ. ժողովոյ, որպէս զի պատժական օրինաց տրամադրութիւնն ի գործ դնէ յօրինակ այլոց ։

Այն յայտագրին նկատմամբ Թաղ. ժողովոյ որոշումն դեռ հաղորդուած չէ Տնտես. Խորհրդոյ ։

Գընալը կղզի. — Տեղւոյն Թաղեցի ազգայինք և նոյն իսկ արդի Թաղ. Խորհուրդը դիտողութիւն ըրած լինելով նախորդ Թաղ. Խորհրդոյ պաշտօնավարութեանը վերաբերեալ հաշուեցոյցին մէջ նշանակուած կալուածական նորոգութեան ծախուց մասին, այս պատճառաւ ընդ քննութեամբ կը մնան յիշեալ հաշիւներն ։

Թօփգափու. — Նոյնպէս այս Թաղի հըրաժարեալ Թաղ. Խորհրդոյ հաշուոց նկատմամբ Թաղեցի մի քանի ազգայինք դիտողագիր ներկայացուցած լինելով՝ Տնտես. Խորհուրդն ի բացատրութիւն հրաւիրած է նախորդ Թաղ. Խորհրդոյ Դիւանն ։

Պէշիկթաշ. — Այն Թաղի հաշուեցոյցն թէև մատուցուած և ժամանակին Թաղեցւոց դիտողութեանը ենթարկուած է, սակայն Թաղեցի ազգայնոյ մը դիտողութեանը վրայ հաշիւները կը մնան դեռ անվաւեր ։

Կէտիկփաշա. — Տնտ. Խորհուրդը չկըրցաւ վաւերացնել այն Թաղի հաշուեցոյցն, նկատելով որ առ զանազան հաստատութիւնս ունեցած կտակային պարտքերն ի նոյն հաշուեցուցակի չէին նշանակուած ։

Թաղ. Խորհուրդն այժմ հրաժարած լինելով՝ յաջորդին վերապահուած է հաշուական սոյն թերին լրացնելու գործն ։

Իւսկ. Նոր թաղ. — Այս Թաղի 1883-84 տարւոյ հաշուեցոյցն ալ թէև Թաղեցի ազգայնոց դիտողութեանն ենթարկուած է ժամանակին, սակայն դեռ անվաւեր կը մնայ Եկղ. սնտուկին քանչէլէրի տրոց հաշուէն առնեալ. սնտուկն ունեցած պարտուց դէմ ի նոյն հաշուեցուցակի նշանակեալ Գալիպ Նէ Արսէնեան կտակային պահանջքի խնդրոյն համար որ կարգադրուելու վրայ է ։

Գասըմ փաշա. — Տեղւոյն Թաղ. Խորհուրդը բողոք բարձած էր իւր Նախորդին գանձապետ Քէլէչեան Կարապետ աղայի դէմ, յայտնելով որ ոչ միայն չհաճիր յանձնել Եկղ. հաշիւներն, այլ եւ պատրաստի դրամն իւր քով պահած է, եւ թէ զանազան հասից գումարներ չեն երեւիր արձանագրուած Եկղ. տումարին մէջ ։

Տնտես. Խորհուրդը քննութեան ենթարկելով յիշեալ գանձապետին հաշիւներն՝ պատրաստի դրամն գանձեց, իսկ Եկղ. տումարին մէջ չարձանագրուած մի քանի հասոյթներու խնդիրն՝ արժան համարեց վերապահել նոյն ժամանակի Թաղ. Խորհրդոյ Ատենապետին ներկայութեանն, որ Մայրաքաղաքէս բացակա կը գտնուի ։

Սոյն Թաղի Նախորդ Թաղ. Խորհրդոյ պաշտօնավարութեան հաշուետումարներն միայն ներկայացած լինելով, օրինաւոր հաշուեցոյցը դեռ մատուցուած չէ ։

Գալաթ. — Գալաթու Թաղային հաշուոց նկատմամբ ոչ միայն անպաշտօն, այլ եւ պաշտօնական տրտունջներ անպակաս էին. —

Այս Թաղէն 1878էն սկսեալ հաշիւ մատուցուած չէր. Տնտես. Խորհուրդը ժամանակի Թաղ. Խորհրդոյ դիւաններուն առջեւ հրաւէր կարդալով՝ առացաւ 1878 Սեպտ. 1էն մինչ 83 Յունվար 31ի հաշուետումարներն, առանց օրինական հաշուեցոյցի, եւ 1883 Մարտ 6էն մինչեւ 85 Մարտ 3 ի մատակարարութեան հաշուեցոյցերն, որք ընդ քննութեամբ կը մնան ։

Վերջին շրջանի Թաղ. Խորհրդոյ գանձապետ Աղաճան էֆ. Աւետիսեան կամբաստանուէր ներկայ Թաղ. Խորհրդոյ կողմէ թէ, Եկղ. պատրաստի 130 ոսկին պահած է իւր քով եւ ըստ հաճոյս կը յատկացնէ Եկղ. զանազան պարտուց ։

Այս մասին կատարուած քննութիւնք հաստատեցին որ, 130 ոսկւոյ գումարն Աղաճան էֆ. ոչ թէ ինքն ինքնին, այլ իւր եօթն հրաժարեալ ընկերներով հանդերձ 130 ոսկիէն 100ը վճարած է Եկղ. սնտուկին զանազան պարտուց, սակայն այն միջոցին, երբ առժամեայ Խորհուրդն պաշտօնի գլուխ նոր անցած կը շարունակէր իւր պաշտօնը ։ Տնտես. Խորհուրդն կատարուած գործողութեանց մէջ զեղծում չնչմարելով Աղաճան էֆ. նոյնպէս Նախորդ Թաղ. Խորհրդոյ վրայ ծանրացեալ յանցանք մը չնչմարելով, ըստ հաշուեցոյցի մնացորդ 3389 ղրշ.ն պարունակող արկղն կընքեց եւ իւր քննութեան արդիւնքն յայտարարեց Քաղաքական Ժողովոյ ։

Էյուպ Ս. Եղիա. — Տնտես. Խորհուրդը կը դիտէր որ հետըհետէ կատարուած Թաղ. Խորհրդոց ընտրութիւններն կը վաւերանային Քաղ. Ժողովոյ կողմէ, առանց Տնտես. Խորհրդոյ կարծիքն և դիտողութիւնը լսելու՝ ընտրելոց անցեալ պաշտօնավարութեանը մասին ։

Գեր. Պատ. Տեղապահ Հայրն Խորհրդոյս սոյն փափաքանաց տեղեկանալով՝ յղեց Տնտեսական Խորհրդոյ Էյուպ Ս. Եղիա Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյն ընտրութեան տեղեկագիրն, յորում Տնտես. Խորհուրդն տեսնելով որ երկու անձինք նախապէս իրենց վարած պաշտօնավարութեան հաշիւը չէին մատուցած, և ոչ իսկ

*հաստատած էին Տնտես. Խորհրդոյ յանձնարարութիւններն, իւր դիտողութեամբ վերադարձուց տեղեկագիրն Նորին Գերապատուութեան, և այդ անձինք զրկուեցան ընտրական իրաւունքէ ։*

*Տնտ. Խորհուրդը այս առթիւ կառաջարկէ Ձեր Բարձր Սրբազնութեան, որ օրինաց կարգն անցնի ընտրութեան պարագային մէջ՝ ընտրելոց անցեալ պաշտօնավարութեան գործոց նկատառման խնդիրն, որպէս զի իրենց պաշտօնին մէջ զանցառու գտնուողաց նկատմամբ գոնէ վերընտրութեան ժամանակ պատշաճը տնօրինուի ։*

Թօփգաբուի Նախկին Դպրապետին հաշիւը · —

*Տեղւոյն Թաղ. Խորհրդոյ և Դպրոց ընկերութեան կազմէ կամբաստանուէր նախկին դպրապետ Գրիգոր Մկրտիչեան անուն անձ մը, իւր դպրապետութեան ժամանակի հաշիւները տալ չյօժարելուն համար ։*

*Տնտես. Խորհուրդն այս զանցառութեան պատճառներն որոց երկուստեք տեղի տրուած էին, բառնալով հաշիւ և դրամ յանձնուեցան արդէն Դպրոց ընկերութեան ։*

Ակնայ կարուշխտ գիւղի Ազգ. կալուածական հաշիւը.

*Տեղւոյն Թաղ. Խորհուրդը կը բողոքէ Գօլօյ իւր գործակալին դէմ յայտարարելով որ, անոր հսկողութեանն յանձնուած կալուածոց մատակարարութեան քանի մը տարիներու հաշիւները չէ կարողացած ստանալ, և կը խնդրէ առնել անկէ հաշիւներն և նոր գործակալ մը կարգելով՝ անոր յանձնել ։*

*Տնտես. Խորհուրդը հրաւիրելով յիշեալ գործակալն՝ որ էր Քէօսէեան Ստեփան էֆ. դիւրութեամբ և օրինաւորապէս ստացաւ խնդրոյ նիւթ եղող հաշիւներն և թէև գոհացուցիչ գտաւ, սակայն արժան համարեց անոր օրինակն հաղորդելով բողոքող կողմին՝ լսել եթէ դիտողութիւններ ունի ։*

*Թաղ. Խորհուրդն՝ ոչ միայն դիտողութիւն մը չըներ, այլ և հաշուոց և կալուածական մատակարարութեան օրինաւորութիւնը շնորհակալութեամբ հաստատելէ յետոյ, կը խնդրէ կոչումն ընել Քէօսէեան էֆ.ի ազգասիրութեամբ շարունակելու իւր պաշտօնն ։ Եւ Տնտես. Խորհուրդը դժուարաւ կը հաճեցնէ զայն գոնէ մինչև 1886 Մայիս չթողուլ իւր պաշտօնն, և հաշուետումարներն վաւերելով կը յանձնէ նմա ։*

Սամար. Դպրաց. Ընկերութիւնը եւ հաշիւը · —

*Այս ընկերութիւնն հակառակ իւր պարտաւորութեան չուզելով հաշիւ ներկայացնել Պատրիարքարանի և քմածին՝ անկախ և յոռի մատակարարութեամբ միշտ խուսափած լինելով Վարչութեան հսկողութենէն, 1878 Թուականի Տնտես. Խորհուրդն՝ որոյ համարատուութեան տեղեկագիրն որոշ կերպիւ կը պարզէ խնդիրը, կսկսի այդ ընկերութեան վագֆին վերաբերեալ առուծախի գործողութիւնն յատենի իւր կատարել, և կորոշէ չշարունակել այսպէս, մինչև որ ընկերութիւնը տայ իւր համարը ։*

*Յիշեալ Թուականէն յետոյ՝ Տնտես. Խորհուրդներն շարունակ զբաղած են սոյն խնդրով, սակայն տեսնելով որ ընկերութիւնն միշտ յամառ կը մնայ, կը հարկադրին 1878ի Տնտես. Խորհրդոյ որոշման համեմատ վագֆի առուծախի գործողութիւնները ի Պատրիարքարանի կատարել։ Ոչ նուազ աշխատեցաւ սոյն խնդրով նաև ներկայ Տնտես. Խորհուրդն, և մինչև իսկ յանձն առաւ զոհողութիւններ կատարել, սակայն ընկերութիւնն անուղղայ մնաց և մինչև իսկ զլացաւ ի Պատրիարքարան ներկայացնել դպրոց վագֆին վերաբերեալ կալուածոց կալուածագրերն, զորս իրաւագէտ ազգայնոց ընդ. Քաղ. ժողովոյ կատարած բանակցութեան արդեանց համեմատ անհրաժեշտ էր միանգամ տեսնել և քաղել ինչ ինչ տեղեկութիւնք, ըստ օրինակի այլոց ազգային սեպհականութեանց:*

Տեառ. Խորհուրդն նկատելով որ յիշեալ ընկերութիւնն ընդ կասկածանօք է, և ըմբոստ մ' Ազգ. իշխանութեան դէմ, փութայ 1834 հոկտ. 13 թուականաւ յայտագրով մը իւրայ վիճակին Թաղ. Ժողովոյ ներկայացնել, ազդու միջոցներ ձեռք առնլոյ առաջարկութեամբ։

Թէև Տեառ. Խորհուրդն առաջ ի վեր տեղեկացած չէ այս մասին Թաղ. Ժողովոյ ձեռք առած միջոցներուն, սակայն առիթ կը համարի խնդրել, որ բարեհաճի Ձեր բարձր Սրբազնութիւնն վերջնագրով մը յուղղութիւն և ի պարտաճանաչութիւն հրաւիրել Դպրաց ընկերութիւնն Սամաթիոյ, և երբ անսաստէ վերստին, պատասխանատուն ի գործ դնել օրինաց պահանջած եղանակաւ։

Վանայ Արարուց Ս. Աստուածածին Եկեղեցւոյ կալուածական հաշուոց խնդիրը. —

Վանայ Արարուց Ս. Աստուածածին Եկեղեցին ի Մայրաքաղաքս քանի մը կտոր կալուածներ ունենալով և 1878ի Տնտես. Խորհուրդըն տեսնելով որ այդ կալուածոց վարձքերն փոխանակ Եկեղեցւոյ պիտոյից ծառայելու, զանազան անձանց վրայ կը գտնուին, և նոյն ժամանակի Հոգաբարձուք Պատրիարքարանի հրահանգները յարգել չեն ուզեր, կ'առնու սոցա հաշիւներն և առ ժամանակեայ կերպիւ կալուածոց մատակարարութեան հոգը կը յանձնէ՝

Չինիլի խանի սեղանակալ Պաղտասար
Ալիփաշա խանի » Նաթանեան Յարութիւն
Սէփէթճի » » Արքայ Մարկոսեան »
Ամբատեան Մագսուտ

էֆ.ներէ կազմեալ Հոգաբարձութեան մը, որու կը հաղորդէ նաև նոյն կալուածոց նախորդ մատակարարութեան հաշիւներն։ Այս Հոգաբարձութիւնն մինչև 1881 Յուլիս 31 պաշտօն վարեց նաև գիւղին Թաղ. Խորհրդոյ կողմէ գործակալ կը նշանակուի Սուլախեան Աբրահամ էֆէնտի Վանեցի արժանահաւատ ազգայինն, և Վանայ Գուստանեան ժողովոյ կողմէ կը խնդրուի հաշիւ և դրամ առնել Հոգաբարձութենէն և յանձնել նորընտիր գործակալին։

Հոգաբարձուք ազդէ ինքնինքնին հրաժարեալ համարելով՝ հաշուապահ և պատասխանատու ցոյց կուտան Մագսուտ էֆէնտի, որ գանձապահն է եղեր, և թէ սա միշտ կը պնդէ որ գործառնութեանց մասին համար տալու պատասխանատուութիւն չունի բնաւ և ոչ իսկ ուղղակի գանձումներ ըրած է կալուածական վարձքերէն, այլ հաւաքիչ կարգուած անձինք ինչ դրամ որ գանձած և յանձնած են իրեն, իբր աւանդապահ պահած է զայնս, որու հաշիւը միայն պարտի տալ։

Խնդիրն կնճռոտ հանգամանք մ'ունենալուն, որ յառաջ եկած էր յիշեալ Հոգաբարձուներու տարուէ տարի հաշիւ չմատուցանելու զանցառութենէն, Տեառ. Խորհուրդն բաւական աշխատելէ յետոյ՝ վերջապէս տեսաւ որ խնդիրը հետևեալ վիճակին կը հասնի։

Ամբատեան էֆ. իրեն յանձնուած դրամոց հաշիւն կը ներկայէ հետևեալ կերպիւ.

Մինչև 1879 Սեպտ. ամիս Հոգաբարձութեան գանձապետութեան պաշտօնը վարող Արքայ Մարկոսեան Յարութիւն պարտէ իրեն

| | | |
|---|---|---|
| յանձնուած պատրաստը | | 1820 ղրշ. |
| Սեպտ. 1է մինչև 81 Յուլիս 31 կալուածներէն գանձուածը | | 3740 » |
| | | 5560 » |
| Պահանջ. Չուհաճի խանի սեղանակալէ | 600 | |
| Ալի փաշա խանի սեղանակալէ. | 510 | |
| Ճամլը խանի » | 1660 | 2770 |
| | | 8330 |
| Փոխարէն զանազան ծախքեր | 855 | |
| Վճարեալ Պատրիարքարանի հրամանին | 832 | |
| | 1687 | |

և յանձն կառնու իւր քով գտնուած մնացորդ 3873 ղրուշն, ինչպէս նաև հաշիւ և մուրհակ

յանձնել նորընտիր գործակալին, եթէ մի ապահովագիր յանձնուի իրեն ։

Միւս կողմէ նորընտիր գործակալ Սօլախեան էֆ. բացի Արթին Մարկոսեանի յանձնած 1820 ղրշէն, 9800 ղրշի վարձուց հաշիւ մը կը պահանջէր, շարունակաբար ի հաշիւ դնելով վարձուց առնականներն, մինչդեռ Սիմոնեան Մաքսուտ էֆ. և իր ընկերք կը յայտարարէին որ նոյն կալուածները շատ ժամանակ պարապ մնացած են ։ Այս հաշուով նախորդ Հոգ. և ներկայ գործակալին ներկայացուցած հաշուոց միջև 3290 ղրշի չափ տարբերութիւն մը երևան կուգար ։

Եւ որովհետև մէկ կողմէ սենեակներն շարունակաբար ի վարձու լինելը կարելի չեղաւ ստուգել, և միւս կողմէ Նախորդ Հոգաբարձուք երբեմն գոց մնացած լինելուն համար կը պնդէին առանց սակայն օրինաւոր հաշուետուութեան մը ունենալու իրենց այն յայտարարութիւնն հաստատող. և Մաքսուտ էֆ. պատրաստ դրամին, Թղթոյ և հաշուոց յանձնման մասին ապահովագիր մը կը պահանջէր և առանց անոր կը դժկամակէր յանձնել ինչ որ կայ իր քով, և հետևաբար Տնտ. Խորհուրդը նկատելով որ որևէ երկարաձգում կրնար աւելի վնասակար հետևանք մ'ունենալ, և բանաւոր էր կատարուած իրողութեան մ'առջև առնուլ դրամն և հաշիւներն Սիմոնեան էֆ.էն և յանձնելով նոր գործակալին, փակել խնդիրն, և յառաջիկային համար զգուշութիւններ ձեռք առնուլ, ուստի կը վճռէ որ նախորդ Հոգաբարձուք խղճիւ չեն կատարած իրենց պաշտօն և ոչ իսկ խնամ տարած են կալուածոց մատակարարութեան, և կ'որոշէ ստանալ մնացորդ գումարն, մուրհակք և հաշիւ Սիմոնեան էֆ.էն և տալ անոր խնդրած ապահովագիրն ։

Սոյն որոշման համեմատ Սիմոնեան Մաքսուտ էֆ. կը վճարէ Սօլախեան էֆ.ի հրամանին 35 Օսմանեան ոսկի, և Տնտես. Խորհուրդն հաստատուած է որ Մաքսուտ էֆ. ներկայանալով յանձնէ նաև մնացորդ 93 ղրշ. մուրհակ, հաշիւ և այլ ինչ որ կը գտնուի իր քով, Սօլախեան էֆ.ի և սորանոյ պէտք եղած ապահովագիրն ։

Կը մնայ արդ, որ Սօլախեան էֆէնտի անցեալն օրինակ ունենալով իր աչաց առջև, յետայսորիկ ջանայ բարւոք ուղղութիւն մը տալ յիշեալ կալուածոց մատակարարութեան, և արդիւնաւորէ զանոնք, դէթ անցեալին վնասը մեղմելու համար ։

**Ճիզիէ անուն վագֆը եւ հաշիւը.**— Այս վագֆին մէթէվէլլին իրեն եղած կրկին ազդարարութեան հակառակ, Ազգ. Կեդր. Վարչութեան համարատուութեան իրաւունքը ճանաչել չուզելով հաշիւները չներկայելուն, 1878ի Տնտես. Խորհուրդը կ'որոշէ սոյն վագֆին լինելիք Ֆէրաղները արգիլման ներքեւ դնել եւ ի Պատրիարքարանի կատարել զանոնք, մինչեւ որ մէթէվէլլին զիջանի իր հաշիւները տալ, եւ 1882 Թուականին միջնորդութեամբ Մ. Եկղ. Արժ. Տ. Սուքիաս քահանայի յիշեալ արգելքը կը բարձուի եւ հրահանգ կը տրուի մէթէվէլլի Անդրանիկեան Թադէոս էֆ.ի վարել իր պաշտօնն ըստ առաջնոյն, պայմանաւ որ մէթէվէլլին հաշիւ տայ Ազգ. Պատրիարքարանի, նոյն վագֆին հաստատող բարերարին կամքն՝ որ է օգնել աղքատաց, ի գործ դնելու համար պէտք եղած ապահովագիրն յանձնէ Տնտես. Խորհրդոյ ։

Տնտես. Խորհուրդը նկատելով որ մէթէվէլլիութեան իրաւունքը թէև վերադարձուած է Թադէոս էֆ.ի, սակայն պայմաններն անգործադրելի կը մնան, եւ անոր ի վեր ոչ հաշիւ մատուցուած է եւ ոչ իսկ յանձնուած որոշեալ պայմանագիրն, ուստի խնդրեց յիշեալ Արժ. Հօրմէն, որ հաճի ի պատասխանատուութիւն հրաւիրել մէթէվէլլին եւ ստիպել զայն ութօրեայ պայմանաժամու մէջ տալ իր հաշիւն եւ յանձնել ապահովագիրն ։

Սոյն յանձնարարութիւնը կրկնուեցաւ թէեւ, սակայն Տնտես. Խորհուրդն ցարդ կսպասէ ստանալ հաշիւ եւ ապահովագիր ։

**Պեշիկթաշի Եկեղեցւոյ արծաթեղինաց վաճառման եւ միւթեվելլիութեան հաշիւք. —**

*Պէշիկթաշէն հասած գիր մը կը գանգատէր տեղւոյն Եկեղեցւոյ մէթէվէլլի Մ. Շիրին անուն անձի մը դէմ, թէ, ինքնին Եկեղ. անօթներ ի վաճառ կը հանէ եւ 17 տարուան Եկեղ. հաշիւը կը դժկամակի տալ, եւ երբ ստիպուած լինի կրօնափոխութեան խնդիր կը յարուցանէ։*

*Տնտես. Խորհուրդը պարտաւոր զգաց մէթէվէլլին իւր հաշիւներն յանձնելու, եւ խնդրեց Գաղ. Ժողովէն որ զայն օրինաց սահմանին մէջ պահանջելու եւ ստանալու համար պէտք եղած հրահանգը տայ տեղւոյն Գաղ. Խորհրդոյն, առանց կարեւորութիւն ընծայելու մէթէվէլլիին առարկութեանց ։*

*Տնտես. Խորհուրդն ըստ Սահմանադրութեան ընկալաւ նաեւ*

**Հիւանդանոցի մատակարարութեան հաշուեցոյցը. —**

*Հիւանդանոցի Հոգաբարձութեան հաշուոց մասին Ազգային Ժողովոյ մէկ յանձնարարութեանը համեմատ, Տնտես. Խորհուրդը տպագրութեամբ ի լոյս ընծայեալ Հոգաբարձութեան քառամեայ պաշտօնավարութեան համարատուութեան տեղեկագիրն եւ ընդ նմին հաշուեցոյցը նախորդ Տնտես. Խորհրդոյ կողմէ վաւերացեալ Գաղ. Ժողովոյ հաղորդելէ զկնի, ստացաւ նաեւ նոյն հաստատութեան 1883-84 տարւոյ մատակարարութեան հաշուեցոյցն եւ օրինաւոր գտնելով զայն՝ վաւերեց հաշուետումարները ։*

**Բերայի կալուածական սնտուկի հաշուեցոյցը. —**

*Նոյնպէս օրինաւոր եւ գոհացուցիչ գտնելով վաւերեց Բերայի կալուածոց սնտուկի հաշիւներն, որ 1882 Սեպտեմբեր 1էն սկսեալ մինչեւ 1883 Դեկտ. 31 վեշտասանամսեայ մատակարարութեան վիճակը կը ներկայացնէին ։*

**Ղալաթիոյ կալուածոց սնտուկին հաշուեցոյցն. —**

*Սոյն հաշուեցոյցը կսկսէր 1881 Յունվար 1էն եւ կը յանգէր մինչեւ 31 Դեկտ. 83 տարւոյ, եւ ունէր յարակից բացատրութեանց տեղեկագիր մը ։*

*Կատարուած մանրամասն քննութիւնք ապացուցին թէ, Հոգաբարձութիւնն իւր ջանից յարատեւութեամբ եւ բարւոք մատակարարութեամբը յաջողած էր կալուածոց սնտուկին 3796 1/2 ոսկւոյ չափ պարտքն՝ զոր ժառանգած էր իւր նախորդէն, 2358 ոսկւոյ իջուցանել, նոյնպէս յաջողած էր պարտուց 9, 10 եւ 12 տոկոսներն առ հասարակ 6 % ի դեղջել եւ տարին 134 ոսկւոյ չափ շահ մը յառաջ բերել. Հետեւաբար Տնտես. Խորհուրդը գոհացուցիչ գտնելով հաշիւները վաւերեց ։*

*Ոչ նուազ գոհունակութեան արժանի էր յիշեալ Հոգաբարձութեան տարած աշխատութիւնն՝ Հօֆֆի արձանագրութեան երկ օրինակ տումարի մը պատրաստութեան մասին ։ Սոյն տումարները յատուկ խնամք պատրաստուած էին, մին միշտ ի Պատրիարքարան մնալու համար, որպէս զի ամեն առուծախի գործողութիւն երկու տումարաց մէջ արձանագրուի միանգամայն ։*

*Կալուածոց Հոգաբարձութիւնն այսպէս ամենայն օրինաւորութեամբ իւր համարատուութիւնը կատարելով՝ Ղալաթիոյ Եկեղ. Վարժարանին ժամ յառաջ հաստատութեանը մասին երկու կարեւոր միջոցներ առաջարկած էր, կամ որոշել, որ կալուածոց եւ Հօֆֆներու եկամուտներն ամբողջապէս պարտուց վճարմանը յատկանան եւ Ղալաթիոյ Թաղային սնտուկը պահէ Եկեղեցին եւ Թաղին նախակրթարանն, եւ կամ կալուածոց սնտուկին մատակարարութիւնն անկախ Հոգաբարձութեան մը յանձնել, հրահանգ տալով անոր որ հանգանակութեամբ հատուցանէ այդ պարտքը ։ Ըստ յայտագրի Հոգաբարձութեան առաջին առաջարկն երկու տարւոյ միջոցի մէջ, իսկ երկրորդը 3—4 ամիսէն կալուածոց սնտուկին պարտուց*

հատուցմամբ Կեդր. վարժարանին հաստատութիւնը կը յուսադրէին ։

Տնտես. Խորհուրդն երկրորդ առաջարկին ընդգրկելով, եւ նկատելով այս առթիւ որ Հոգելոյս Սրբազան Պատրիարք Հայրն յիշեալ պարտուց բարձման եւ Կեդր. վարժարանին բացման մասին արդէն ձեռն ի գործ արկած է յատուկ Յանձնախմբի մը հետ եւ իւր 1500 ոսկւոյ մօտ գումարի մը հանգանակութիւնն տնօրագրուած է սոյն նպատակն իրագործելու համար, ուստի հաշուոց մասին իւր քննութեան արդիւնքն եւ յիշեալ առաջարկութեանց մասին իւր կարծիքն հաղորդեց Քաղ. Ժողովոյ 1884 Յուլիս 11 Թուականին ։

Տնտես. Խորհուրդն իւր համարատուութեան ժամուն մօտ՝ Քաղ. Ժողովոյ Մարտ 8 Թուականաւ պաշտօնագրէն տեղեկացաւ միայն որ, կալուածոց սնտուկին հաշիւները գոհացուցիչ գտնուած եւ գոհունակութեան գիր գրուած է Հոգաբարձութեան ։

Կիպրոսի Վանուց Եկեղ. հաշիւը. —

Կիպրոսի Ընդհանուր Ժողովէն ըստ օրինի մատոյց Ազգ. Վարչութեան, Մակարու Վանուց եւ Ս. Աստուածածնայ Եկեղեցւոյ 1882 Յունվար 1է 1883 Դեկտ. 31 երկամեայ ելեւմտից հաշուեցոյցերն, զորս Տնտես. Խորհուրդն ուշադրութեան առած է։

Բաց յայսցանէ Տնտես. Խորհուրդն պահանջեց նաեւ Տիվրիկու կալուածոց Հոգաբարձութեան հաշիւներն, սակայն Հոգաբարձութիւնն 1882-83 տարւոյ հաշուեցոյցն նախորդ Տնտես. Խորհրդոյ մատուցած, իսկ 1883-84 տարւոյ հաշուոց պատրաստութեան եւ մատուցման համար անդուոյն վարժարանին հաշուոց ժամանելուն հարկն ցոյց տուած լինելով՝ Տնտես. Խորհուրդն չկրցաւ ստանալ զայն։

Արժան է դիտել նաև որ, հաշուական քննութեանց համար հաստատեալ եղանակն՝ այն է հաշուեցոյցերն քանի և մէկ օրեայ պայմանաժամու եկեղեցւոյ բակին Թաղեցւոց դիտողութեանն ենթարկելու դրութիւնն անբաւական է, և զգալապէս կը նշմարուի այդ եղանակին փոփոխմամբ դիտող Թաղեցւոց մատչելի կերպիւ հաշուական քննութիւնք կատարելու գործնական եղանակի մը պէտքն, և այս մասին Տնտես. Խորհրդոյ անդամներէն մին Թէև առաջարկեց որ, Թաղային հաշուեցոյցերն Եկեղ. բակն կախուած օրէն ի տես դրուին նաև հաշուետումարներն եկղ. խորհրդարանին մէջ և Տնտես. Խորհրդոյ կողմէ պաշտօնական ծանուցմամբ հրաւիրք տրուի այն Թաղեցւոց, որ կատարած են իրենց սահմանադրական պարտաւորութիւնն վճարմամբ նոյն տարւոյ Ազգ. Կեդր. տուրք՝ հնգետասանօրեայ միջոցի մէջ շաբաթն 2 կամ 3 անգամ ուզողք անցնել և քննել հաշուեցոյցին հետ միանգամայն հաշուետումարներն, յետ քննութեան դիտողութիւններն գրաւոր կերպիւ ուղղակի Տնտես. Խորհրդոյ ներկայացնելու պայմանաւ, սակայն Տնտես. Խորհուրդն արժան համարեց իւր յաջորդին Թողուլ սոյն առաջարկութեան իրագործումն, որ կրնայ յաւ հետեւանք մ'ունենալ և արդիւնք մը յառաջ բերել ։

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՋԱՆԱԶԱՆՔ

1. ԳԱՒԱՌԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ. — 2. ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ ՆԵՐՔԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ. — 3. ԺԱՌԱՆԳԱԿԱՆ. — 4. ԱԶԳԱՅԻՆ ՇԻՆՈՒԹԻՒՆՔ. — 5. ՔԱՂԱՔԱՅԻՆ ՋԱՆԱԶԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ. — 6. Յ. ՆԵՐՍԷՍ ՊԱՏՐԻԱՐՔԻ ՆՈՒԻՐԵԱԼ ՊՍԱԿՆԵՐ.

### 1. ԳԱՒԱՌԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

Գաւառական գործերն՝ ինչ որ ալ ըլլին՝ նիւթական կամ բարոյական, օրինաւորութեան մէջ լուծուելու եւ կարգադրուելու լաւագոյն միջոցներէն մին է որ, գաւառական Առաջնորդք՝ Վանահայրք եւ Վարչութիւնք առ հասարակ՝ մէկ մէկ գործակատար ունենան Մայրաքաղաքիս մէջ, ինչպէս ունին մի քանիներն, եւ այն ատեն կ'անհետանան նաեւ այն դժուարութիւններն եւ յապաղումներն, որ տեղի կուննան առէջ վիճակաց հեռաւորութեանը պատճառաւ, եւ կարեւոր դատուած տեղեկութիւններն առնուլն անմիջապէս այդ գործակալներէն եւ անոնց հետ բանակցութեամբ երկրին վիճակին եւ պահանջման համեմատ ելք տրուի գաւառական խնդրոց. թողլով որ այս միջոցն կը նպաստէ նաեւ կեդր. սնտուկին՝ եւ խել մը ծախքեր որ պիտի ըլլան՝ հեռագիր, թղթատար եւ այլն որք հաշուեկշռին մէջ բաւական տեղ մը կը գրաւեն, զգալի կերպով կը նուազին։

Այս մասին Ցնտես. Խորհրդոյ մէկ առաջարկը Քաղաքական ժողովը բանաւոր գըտաւ եւ թէեւ պէտք եղած հրահանգն հաղորդեց Տաճկաստանի քաղաքաց եւ գիւղօրէից, սակայն մէկ քանիներն միայն կրցան ըմբռնել յիշեալ տնօրէնութեան օգուտներն, եւ պատասխանեցին Քաղ. ժողովոյ շրջաբերականին։ Իսկ միւսներն չգործադրեցին ժողովոյ յանձնարարութիւնն, ոմանք առարկելով որ իրենց գործերն ծանր չեն եւ պէտք չունին գործակալի, ոմանք՝ յարմար անձ մը չեն կըրցած գտնել, եւ ոմանք ալ բնաւ չպատասխանեցին։

Ցնտես. Խորհուրդն սկսած է ի հարկին կատարել իւր բանակցութիւններն ընտրուած գործակալաց հետ, եւ աւելորդ չհամարիր յայտնել թէ, այս եղանակաւ առնուած ընդարձակ եւ մանրամասն տեղեկութիւնները մեծ դիւրութիւններ կընծայեն խնդրոց լուծման, եւ մեծապէս օգտակար պիտի ըլլին յառաջիկային, եթէ առհասարակ ամէն վիճակներ ընտրեն իրենց գործակալներն, հարկ եղած հրահանգները տալով անոնց։

Երզնկայի ի վաճառ հանուած պատկերաց խնդիրը. —

Երզնկայի Ցնտես. Խորհուրդը տեղեկութիւն առած էր թէ, տեղւոյն Ս. Երրորդութեան Եկեղեցւոյ կը պատկերներն առանց Գաւառական Վարչութեան գիտութեան՝ տեղւոյն Թաղ. Խորհուրդը Յոյն հնավաճառի մը 20 ոսկւոյ վաճառած է, առանց արժէքն ըն-տանալու, եւ յարելով որ յիշեալ Թաղ. Խորհրդոյ անդամներէն մին, Քիւրտեան Կարապետ էֆ. Մայրաքաղաքս կը գտնուի՝ խնդրած էր քննութեան ենթարկել զնա, եւ պատկերներն ձեռք անցնելու միջոցները տնօրինել։

Ցնտ. Խորհուրդը Քիւրտեան Կարապետ էֆ. կոչելով ի Պատրիարքարան եւ կարեւոր եղած բացատրութիւններն եւ տեղեկութիւններն առնելով, երբ կը բաղձէր խնդրոյն ելք մը տալու միջոցներուն տնօրինութեամբը, կը լսէ որ Երզնկայէն մի անձ ղրկուած է ի Զմիւռնիա եւ հոն փոխարինութեամբ մը պատկերաց վերադարձման մասին բանակցութիւններ ու-

զի կունենան Համայնքին հետ, ներկայապէս կը պարտաւորի ընդհանուր քննութիւնն այս ձախող ձեռնարկութեան նկատմամբ տեղւոյն Տնտես. Խորհուրդէն բացատրութիւն կը պահանջէ, որու կսպասուի,

Լիմ եւ կտուց Անապատաց կալուածական խնդիրը. —

Յիշեալ երկուց Անապատաց կալուածական նախորդ Մէնէվիշեանեան կալուածական մատակարարութեան խնդիր մ՚ևս կար նախորդ Տնտես. Խորհրդէն անլոյծ մնացած։

Անապատաց գործակալին պաշտօնէ հրաժարած լինելով գործերն անկանոն վիճակի մէջ կը գտնուէին, եւ նախորդ Մէնէվիշեանին հաշիւներն կը մնային անկարգադրելի։ Տնտես. Խորհուրդ՝ Վանայ Գեր. Առաջնորդը Տեղապահին ուշադրութիւնը հրաւիրելով այս վիճակին վրայ, ընտրել տուաւ նոր գործակալ մը, որ է Մեծ. Աւետիս էֆ. Կիրազեան, եւ հրաւիրեց ընտրեալն ի բանակցութիւն, որոյ ներկայանալուն կ՚սպասուի, խնդրոյն վերջ տալու համար։

Կրետէ Գանտիա քաղաքի Ազգ. սեպհականութիւնք. —

Հայոց Ազգն ունի Գանտիա քաղաքին մէջ Եկեղեցի մը և քանի մը կտոր կալուածներ լքեալ և անխնամ վիճակի մէջ թողուած, և Տնտես. Խորհուրդներն սոյն խնդրով չատ ըզբաղած, և կարեւոր առաջարկութիւններ մատուցած էին Քաղ. Ժողովոյ։

Տնտես. Խորհուրդը Քաղ. Ժողովոյ մէկ պաշտօնագրէն կը տեղեկանայ որ, Խառն Ժողովը պաշտօն յանձնած է Կրօն. Ժողովոյ անդամներէն Արժ. Տաճատ վարդապետի՝ իբր առժամանակեայ այցելու հովիւ ուղեւորել ի Կրետ, և նախապէս հանդիպելով Կրետէ կղզին՝ նոյն սեպհականութեանց վիճակն ի մօտուստ քննել, անոնց ապահովութեան միջոցները առաջարկել և տեղեկագրել Ազգ. Վարչութեան, և այս պաշտօնն հետեւի և անշփոթ կատարելու համար Ժողովն հրահանգի պատրաստութիւնը յանձնարարած էր Տնտես. Խորհրդոյ։

Տնտես. Խորհուրդը հասու խորհրդածութենէ մը յետոյ՝ նկատելով որ յիշեալ Ազգ. սեպհականութեանց մասին պէտք եղած ապահովութեան միջոցները տնօրինելու համար ամեն բանէ առաջ հարկ է որ, տեղական քննութեամբ մը՝ տեղւոյն Եկղ.էն պաշտօնատունէն կարեւոր տեղեկութիւններ քաղուելով՝ հիմ մը ձեռք բերուի և անոր համեմատ խնդրոյն կարգադրութեան միջոցները տնօրինել, հետեւապէս այսպիսի պաշտօնի մը համար եկեղեցականի ընտրութիւնը անպատեհ է, ուստի արժան համարեց Պատրիարքարանի անցագրատան պաշտօնեայ Բլատեան Սեպուհ էֆէնտիի յանձնել յիշեալ պաշտօնն և անոր տեղեկագիրը՝ քննութեան արդեանց մասին՝ ժամանելէ յետոյ ծրագրել յանձնարարեալ հրահանգն, և ըստ այնմ կալուածական ապահովման մասին հրահանգել յիշեալ պաշտօնեայն։

Տնտես. Խորհուրդն այս մասին իւր տեղեկագիրը մատուցած ըլլալով՝ կ՚սպասէ Քաղ. Ժողովոյ պատասխանւոյն, ըստ այնմ շարժելու համար։

Տիվրիկու կալուածական սնտուկին պարտքը Ֆէլէկեանի. —

Տնտես. Խորհուրդն իւր նախորդէն ժառանգեց նաև Ֆէլէկեան Աստուածատուր անուն դատաւորի մը պահանջքի խնդիրն։ Այս դատաստան ազգային շրջանակի մէջ չկարենալով գոհացում տալ իւր խնդրոյն, կառավարութեան դատարանաց դիմած և 10000 ղրշ.ի պահանջքի մը խնդիր յարուցած ըլլալով, դատարանին կողմէ Տիվրիկու վաքֆին և մատակարարութեան նկատմամբ ինչ ինչ հարցումներ տեղի կունենային։

Տնտես. Խորհուրդը կը յաջողի Ազգ. շրջանակին մէջ մտցնել խնդիրն, և ի ներկայութեան Տիվրիկու կալուածական Հոգաբար-

*ձութեան և Ցելէկեանի տոմարական քննութեան ձեռնարկելով այս վերջնոյն 25 ոսկւոյ պահանջքն միայն երևան կը հանէ , կը վճռէ և Հոգաբարձութեան վճարել տալով զայն՝ կը փակէ խնդիրը ։*

**Տիվրիկու գիւղացւոց ընկերութիւնը . —** *Տնտես. Խորհուրդն երբ պաշտօնի ձեռնարկեց , գտաւ իւր սեղանին վրայ նաև Տիվրիկու մի քանի գիւղօրէից կողմէ ներկայացեալ նպաստի խնդիր մը , որոյ համար յիշեալ գիւղացիք անընդհատ կը թախանձէին զՊատրիարքարանն ։*

*Թէպէտ և նախորդ Տնտես. Խորհուրդն ընդ երկար այս խնդրոյն քննութեամբ զբաղած , և իւր կարծիքը ծրագրած էր , սակայն իւր վերահաս հրաժեշտին պատճառաւ զայն Վարչութեան ներկայելու ժամանակ չունենալուն՝ Տնտես. Խորհուրդս ձեռք առաւ խնդրոյն շարունակութիւնը .*

*Տիվրիկի գիւղացիք կը յայտնէին որ բաւական տարիներէ հետէ ֆոֆոմաճի արհեստաւորաց նախաձեռնութեամբ ի Պօլիս հաստատուած և որդինաւորած ընկերութիւն մը ունէին , որուն կը մասնակցէին իւրեանց տարեկան նպաստներով, և որ՝ ըստ իւր նպատակին՝ գիւղական դպրոցները կը խնամէր տարուէ տարի մէկ մէկ գումար վճարելով , և թէ ի վերջէ Տիվրիկի կարող քաղաքացիք այդ հասոյթները կորզած և յատկացուցած են միայն քաղաքին երկու վարժարանաց , ուստի կը պահանջէին որ ընկերութեան հասոյթէն արդար բաշխմամբ մը անխտիր նպաստ տրուի նաև Տիվրիկի ինն գիւղօրէից . Կիւրէսինի , Աշուշէնի , Օտուռի , Բարշամի, Խուռնավուլի, Սուրբ Յակոբայ վանքի , Արմութալի , Մուրվանոյի , և Բալանիկայի վարժարանաց ։ Իսկ Տիվրիկու կալուածոց Հոգաբարձութիւնը կը պնդէր թէ , ընկերութեան հասոյթ ըսուածը կախուած ունի կտակէ մը , որ հիմնուած է վաքֆներու վրայ, որոց տրամադրութիւնն է Տիվրիկու քաղաքի Ս. Առաքելոց և Ս. Աստուածածնայ եկեղեցեաց պէտքերին հոգալ և անոնց վարժարանները խնամել և թէև յառաջագոյն Գափամաճեան էֆ.ի օրով ըստ քմաց միայն Կիւրէսին և Աշուշէն գիւղերու նպաստներ եղած են , սակայն ոչ կտակի տրամադրութեամբ , ուս դէմ միշտ կը բողոքեն ։*

*Բայց որովհետև հոգելոյս Տ. Ներսէս Արքազեան Պատրիարքը յանձնարարած էր որ , եթէ կարող է ընկերութիւնն և անոր հասոյթք բաւական են արժանն առաջարկուի նախ . Տնտես . Խորհուրդն ի քնին կառնու վաքըֆնամէն և հաշուետումարներն , և կը տեսնէ որ վաքֆին նպատակն էր տալ Տիվրիկի երկու եկեղեցեաց քահանայից , դպրաց , վարժապետի մը վարձքն և Տիվրիկի մէջ գտնուած կամուրջի մը նորոգութեան ծախքն, վաքֆի ճամբին և խնամակալաց վարձքը , մինչ հասոյթին մէկ մասը դրամագլխին վրայ յաւելընելու թէութեամբ . Իսկ հաշուեցոյցերէն կը տեղեկանայ որ անոր հասոյթէն կարելի էր՝ եթէ ուզուի՝ գիւղական վարժարանաց նպաստ տալ, և հետագայ պատճառանութեամբ տեղեկագիր մը ծրագրած էր ։*

*1. Հոգաբարձութիւնն իւր վերջին երեք տարուան պաշտօնավարութեան միջոցին միայն Տիվրիկու քաղաքին վարժարանին չէնքին և պաշտօնէութեան համար մատակարարած է վաքֆին հասոյթը ։*

*2. Տիվրիկու քաղաքին 2 վարժարանները դարձեալ ներկայ վիճակին մէջ կրնան պահուիլ , եթէ քաղաքացիք իրենց զաւակաց կրթութեան համար իրենց անձին պատկանած բաժինը վճարեն ։*

*3. Հոգաբարձութիւնը վաքֆին ամբողջ հասոյթը վաքֆին մէկ տրամադրութեանը միայն յատկացուցած է , այն է Տիվրիկու քաղաքին վարժարանաց համար ծախք ընել, և այս պարագային առջև արդարացի է՝ կամ վաքֆի տրամադրութիւնը կէտ առ կէտ գործադրել և կամ վաքֆի նպատակին վրայ բա-*

յափշտակում մը նկրելի խոկ ըլլայ ․ այն ալ հարկ է ի նպաստ աղքատին և կարօտին լինի և ոչ թէ հարուստին ։

Գ. Եթէ Տիվրիկու իննը գիւղօրէից մէկ մէկ նպաստներ ըլլայ, դարձեալ քաղաքին վարժարանները կրնան շարունակել իրենց ընթացքը ։

Թէպէտև նախորդ և արդի Տնտես, Խորհրդոց կարծիքները չէին տարբերեր մէկմէկէ, սակայն արդի Տնտես. Խորհուրդն ուղեց օրինաւոր հիման մը վրայ դնել իւր կարծիքն. ուստի պէտք եղաւ տեղեկանալ նախ թէ, ի՞նչ նկատումներով կտակին բոլոր տրամադրութիւնք չեն գործադրուիր, ըստ որում կտակը չէր նշանակած գիւղերու վարժարանաց նպաստել. Հետևաբար իւր նախորդին պատճառաբանութիւնք Թաղ. Խորհրդոյ մատուցանելով հանդերձ՝ իւր կողմանէ ևս հետևեալ դիտողութիւնները ներկայեց ։

Նախ, Տիվրիկու գիւղօրէից մէկ ճշգրիտ վիճակագիրն անհրաժեշտ է ի ձեռին ունենալ, Գաւառական ժողովէն վաւերացեալ, և քննել գիւղօրէից նիւթական և բարոյական վիճակն. և երկրորդ՝ որովհետև այն ատեն կալուածական Հոգաբարձութիւնը կազմալուծեալ վիճակ մը զգեցած էր հրաժարմանց և բացակայութեանց պատճառաւ, անհրաժեշտ էր վերակազմել զայն և անոր հետ բանակցութեան մտնելով հաշիւ ու կլիմայցոյց ստանալէ յետոյ գիւղացւոց խնդիրն ի նկատ առնուլ ։

Ակնայ Ապուչեխ գիւղի վարժարանին պահանջքը Համամճեան ժառանգորդներէն ։

Ակնայի հանգ. Յարութիւն էֆէնտի Փափազեան ատկէ բաւական տարի առաջ Ապուչեխ գիւղի Ս. Նշան Եկեղեցւոյ վարժարանին դրամագլուխ ըլլալու պայմանաւ՝ հարիւր հազար ղրշնոց Մալիյէ խազինէսի Նէրգիզնամէ սէնէտի մը կը նուիրէ և կը յանձնէ զայն Համամճեան Սարգիս էֆ.ի ի պահեստ, անոր տարեկան շահը վարժարանի ծախուց յատկացնելու պայմանաւ, և քանի մը տարիներ անցնելէ յետոյ, նուիրատու էֆէնտին Ազգ. Վարչութեան բողոք կը յանձնէ թէ, աւանդապահն իւր նուէրը կը բռնաբարէ ։ 1876 Թուականի Տնտես. Խորհուրդն ի քննին առնլով խնդիրն՝ ըստ օրինի յիշեալ սէրմէյին փոխարէն 1275 հատ օսմ. քօնսօլիտէ և տոկոսեաց հաշուէն 131 օսմ. ոսկի 7 ղրուշ պարտական կը մնայ զՀամամճեան էֆէնտի, ետքի վերապահելով գիւղին դպրոցական մատակարարութեան հաշուոց քննութիւնն, և Համամճեան էֆ.ի մահուընէն յետոյ՝ նորա ժառանգորդներն կընդունին և կստորագրեն վճռագիրն, և 131 ոսկւոյ 7 ղրուշի գումարն ևս կը վճարեն ։

Այս միջոցին կ՚աւարտի նաև դպրոցական մատակարարութեան հաշուոց քննութիւնն, որոյ համեմատ 3100 ղրուշի տարբերութիւն մը երևան կուգայ, զոր պարտական կը մնան ժառանգորդք ։ Անոր ի վեր սոյն խնդիրն թէև շարունակ զբաղում պատճառած է և հաշտարար եղանակներ ձեռք առնուած են, սակայն վախճանի մը չէր յանգած, Ճիհրիլլիկի և Այգիներու հասից բռնաբարման մասին գիւղին Թաղ. Խորհրդոյ և ժառանգորդաց մէջ ծագած անհամաձայնութեան մը պատճառաւ ։

Տնտես. Խորհուրդը՝ գիւղին Թաղ. Խորհրդոյ լիազօր փոխանորդ Մեծ. Հալլաճեան Կարապետ էֆ.ի հետ բանակցութեամբ կորոշէ որ, ժառանգորդք վճարեն 1275 օսմ. քօնսօլիտէն և 3100 ղրուշի տարբերութիւնն. իսկ Ճիհրիլլիկի և Այգիներու խնդիրը Թաղ. Խորհրդոյ և ժառանգորդաց միջև կարգադրելի գործողութիւն մը համարելով՝ զայն դատ կը վերապահէ ժառանգորդաց ։

Սոյն որոշման համեմատ ժառանգորդք կը յանձնեն 1275 քօնսօլիտէն. բայց որովհետև նոյն քօնսօլիտէներու 1876ի կէս կտրօնը կը պակսէր, ուստի Տնտ. Խորհուրդը թէ այս և թէ 3100 ղրուշ տարբերութեան գումարները 50 ոսկւոյ գլուխ կը կապէ համաձայնութեամբ երկուց կողմանց, և ժառանգորդք անոր վճարումն

տու Հազարեան էֆ. պարտամուրհակաւ մը տապահովելով՝ կորոշուի քակել հանգուցելոյն կալուածոց վրայ դրուած արգելքը, յանձնել երկուց կողմանց վերաբերեալ մուրհակ, թուղթեն, ինչ որ կան, և այսպէս վերջ կը տրուի այն երեքտասանամեայ խնդրոյն ։

## 2. ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ ՆԵՐՔԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ

**Աւանդից արկղը. —**

Տնտես. Խորհուրդն երբ կոչուեցաւ ի պաշտօն, նախորդ Տնտես. Խորհրդոյ Դիւանն իւր Ընդ. նիստին ներկայանալով մի առ մի յանձնեց Պատրիարքարանի աւանդից արկղին մէջ գտնուած գոյքերը, զորս Տնտես. Խորհուրդը մանրամասնօրէն արձանագրելով ի նոյն նիստի՝ դրաւ վերստին աւանդից արկղն ի պահ ։

Ուշադրութեան արժանի էր որ, այս սընտուկն իրեն յատուկ օրէնք մը չունէր և ոչ իսկ չարունակուած էր 1878 թուականէն ի վեր այս սնտուկին յատուկ արձանագրութեան տումարը ։

Տնտես. Խորհուրդը լրուց այս՞ կէտին և կարևոր պիտոյքներն, և ամեն բանէ առաջ ծրագրեց մի կանոնագիր և զայն իւր Թող. Յուլիս 1884 նիստին մէջ մատուցանելով Քաղ. Ժողովոյ, նոյն տարւոյ Սեպտ. 19ին ստացաւ վաւերացեալ, և դրաւ զայն ի գործադրութեան, քննեց մի առ մի արկղին մէջ գտնուած գոյքերն և յատուկ տումարի մը մէջ իրենց տեսակին կարգաւն արձանագրեց զանոնք ։

Տնտես. Խորհուրդն այսպէս սահմանեց աւանդից արկղի ապահովութեան միջոցներն, առանց ժամանակ ունենալու, որ անցելոյն վրայ ակնարկ մը նետէ ։

Ահաւասիկ կանոնագրին պատճէնը

### Հ Ր Ա Հ Ա Ն Գ

### ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԱՒԱՆԴԻՑ ԱՐԿՂԻ

Յօդուած 1°. Պատրիարքարանի մէջ աւանդից արկղ մը հաստատուած է, ուր պիտի պահուին վէճի տակ եղած ընկերութեանց դրամները, Թաղական Խորհրդոց կողմանէ յանձնեալ աւանդ դրամներ, կտակներ և վերջապէս ամեն տեսակ աւանդ դրամ ։

Յօդ. 2°. Բացարձակապէս արգելեալ են այդ դրամները Պատրիարքարանի ուէ պիտոյից գործածել ։

Յօդ. 3°. Սոյն արկղի բանալին Տնտեսական Խորհուրդն իւր մէկ անդամին կը յանձնէ, գոյից մասնաւոր տետրակը ստորագրել տալով և գոյից ամբողջութիւնն ստուգելով ։

Յօդ. 4°. Տնտեսական Խորհուրդն աւանդապահ անձին անունը Քաղաքական Ժողովին կը ներկայացնէ ընտրութենէն անմիջապէս յետոյ ։ Աւանդապահն ընդհանուրին վստահութիւնը գրաւած անձ մը պէտք է ըլլայ ։

Յօդ. 5°. Աւանդապահ Խորհրդականը պատասխանատու է Տնտեսական Խորհրդին, որ իրաւունք ունի՝ որ ժամանակ որ ուզէ՝ գոյից ամբողջութիւնն ստուգելու ։

Յօդ. 6°. Տնտեսական Խորհուրդն ամբողջութեամբ պատասխանատու է Քաղաքական Ժողովին, որ նոյնպէս գոյից ամբողջութիւնն ստուգելու իրաւունք ունի ։

Յօդ. 7°. Ամեն Մայիսի սկիզբները Տնտեսական Խորհուրդն աւանդից սնտուկին վիճակը տեղեկագրով մը կը հաղորդէ Քաղաքական Ժողովին իւր համարատուութեանը կցելով ։

Յօդ. 8°. Ներկայ Հրահանգը կրնայ բարեփոխուիլ մէկ տարի վերջը ։

**Պատրիարքարանի հին տումարաց եւ թղթոց պահպանութիւնը. —**

Տնտես. Խորհրդոյ ուշադրութենէն չվրիպեցաւ նաև Պատրիարքարանի տումարաց և գրեանց ամփոփման և պահպանութեան խնդիրը ։

Ի սկզբանէ անտի Պատրիարքարանի թղթերն և տումարները ցիր և ցան վիճակի մէջ էին և անհրաժեշտ էր կարգադրել զանոնք և

*օրինաւորապէս արձանագրութեան ու ապահովութեան ներքեւ առնուլ այր ու բէնի կարգաւ։ Տնտես. Խորհուրդն՝ ինչպէս 1884 Ապրիլ 30 Թուականաւ պաշտօնագրով մը ստացած է Քաղ. ժողովոյ, ներկայ տեղեկագրոյս միջոցաւ կառաջարկէ վերստին մի մասնախումբ կազմել և անոր յանձնել այս գործն, որպէս զի միանգամ ընդ միշտ բարձուին այն դժուարութիւններն և անտեղութիւններն, որք ամէն տարի կուգան, երբ խնդրոյ մ'առթիւ դիմուի հին արձանագրութեանց և թղթոց, և այս առթիւ հաստատուի պահեստի դիւանատուն մը, որոյ պէտքն խիստ զգալի է։*

**Պատրիարքարանի Ներքին Վարչութիւն.—** Տնտես. Խորհուրդն *իւր* Խոր. 20 Յունիս 1884 *նիստին ձեռնարկեց պատրաստել նաև Պատրիարքարանի Ներքին Վարչութեան վերաբերեալ կանոնագրի մը ծրագիրն, որ կը պակսէր և խիստ կարեւոր էր։*

*Այն կանոնագրին վաւերացեալ օրինակն դեռ վերադարձուած չէ Տնտես. Խորհրդոյ։*

*Օրինակ կանոնագրի*

# ԾՐԱԳԻՐ ՕՐԻՆԱՑ

## ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ ՆԵՐՔԻՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

Յօդուած 1. *Պատրիարքարանն երեք սենեկի բաժնուած է.*

Ա. *Փոխանորդարան, որոյ պէտն է Պատրիարքական փոխ. Հայրը.*

Բ. *Դիւանատուն, որոյ պետն է Դիւանատան Հայերէնի առաջին պաշտօնեայն։*

Գ. *Անցագրատուն, որոյ պետն է Անցագրատան պաշտօնեայն։*

*Վերջին երկու պետերն առաջին պետին իրաւասութեանը ներքեւ են։*

Յօդ. 2. *Պատրիարքարանի պաշտօնեայք պիտի աշխատին առհասարակ օրը 7 ժամ և կէս օրին մէկ ժամ դադար պիտի առնուն ճաշի և հանգստեան համար, որ ըսել է ընդ ամէնը ութ ժամ։*

*Աշխատութեան ժամերը հետեւեալ կերպով բաժնուած է։*

| | | |
|---|---|---|
| Մայիս, Յուն. Յուլ. | 2էն 5 | 6էն 10 |
| Օգոստ. Սեպ. Հոկ. | 2 1/2էն 6 1/2 | 7 1/2էն 10 1/2 |
| Նոյ. Դեկտ. Յունվ. | 3էն 7 | 8էն 11 |
| Փետ. Մարտ Ապր. | 2 1/2էն 6 1/2 | 7 1/2էն 10 1/2 |

Յօդ. 3. *Ներելի չէ որ և է պաշտօնէի բացակայ մնալ Պատրիարքարանէն բաց ի վկայութեամբ հաստատեալ բանաւոր պատճառներէ։*

Յօդ. 4. *Փոխանորդ Հօր հսկողութեան ներքեւ հաստատուած ներկայութեան տումարին մէջ պիտի ստորագրեն պաշտօնեայք և Դիւանաց պետերն ամեն օր, առաւօտ և երեկոյ, իրենց երթեւեկի ժամերն, զորս Փոխանորդ Հայրն ամէն ամսագլուխ բացակայութիւնը ծանուցանող տեղեկագրով մը պիտի ներկայէ քննիչ Յանձնախմբի մը, որ պիտի կազմուի մէկ անդամ Քաղ. ժողովէն և մէկ անդամ Տնտես. Խորհրդէն ընտրեալ։*

Յօդ. 5. *Այն պաշտօնեայն որ որոշեալ ժամէն ուշ կը ներկայանայ ի Պատրիարքարան իւր ամբողջ օրականը կը կորսնցնէ։*

Յօդ. 6. *Պաշտօնեայ մը եթէ մէկ ամսուան մէջ երեք անգամ բացակայ գտնուի իւր պաշտօնէն, առանց բանաւոր պատճառի, հրաժարեալ պիտի համարուի, և անոր պաշտօնը պիտի յանձնուի ուրիշի։*

Յօդ. 7. *Բացակայութեանց առթիւ առնուած տուգանքներն հանգստեան թոշակի համար հաստատեալ սնտուկի հասոյթ պիտի լինին։*

Յօդ. 8. *Բացակայութեանց օրինաւորութեան նամակներն ու տեղեկութիւնները կ'ուղղուին Փոխանորդ Հօր, որ ամսագլխին իւր տեղեկագրին հետ քննիչ Յանձնախմբին կը հաղորդէ, և քննիչ Յանձնախումբն ալ քննելով զայն՝ կը յանձնէ Տնտես. Խորհրդոյ ի գործադրութիւն, ըստ 5 և 6րդ Յօդուածոց։*

Յօդ. 9. Անհաւատարմութեան յանցանքներն հրաժարեցուցմամբ կը պատժուին՝ եթէ թեթեւ են։

Յօդ. 10. Թէ անհաւատարմութեան ամբաստանութիւններն եւ թէ բացակայութեանց առթիւ քննութիւն եւ բողոք՝ Քննիչ Յանձնախմբին կը ներկայանան դատուելու համար։

Յօդ. 11. Ամբողջ պաշտօնէութիւնը Պատրիարքական Փոխ. Հօր անմիջական հսկողութեան եւ տրամադրութեան ենթարկեալ է, որոյ պատժոյ մասին ըրած տեղեկագրերն ուղղակի Քննիչ Յանձնախմբին մէջ դատուելէ յետոյ գործադրութեան կը դրուին։

Յօդ. 12. Ներկայ կանոնագիրը վերաքննելի է մէկ տարի վերջ, եւ մինչեւ որ բարեփոխմունք կատարուին եւ նորը հաստատուի, չէ կարելի դադրեցնել։

25 յուլիս 1885.

### 3. ԺԱՌԱՆԳԱԿԱՆ

Տնտես. Խորհուրդն ուշադրութեան առած է նաեւ՝

1. Անուշեանց
2. Բալխեան
3. Թումասեան
4. Խոչեան
5. Մասեհեան
6. Մանանեան
7. Մխճեան

անուանց տակ 7 ժառանգական խնդիրներ, որոց նկատմամբ կարեւորութեան արժանի տնօրինութիւն մը ի գործ դրուած չլինելուն, աւելորդ կը համարի այժմէն անոնց նկատմամբ տեղեկութիւններ հաղորդել, եւ կը վերապահէ զայն իւր յաջորդին։

### Դ. ԱԶԳԱՅԻՆ ՇԻՆՈՒԹԻՒՆՔ

Բերայի Եորաշեն թատրոնն եւ՞ հին Ալքազարը։

Բերայի Եկեղեցւոյ սեպհական Ալքազար անուն թատրոնին հասամանէն յետոյ՝ Նախկին Տնտես. Խորհրդոյ օրով Քաղ. Ժողովն արտօնած էր անոր վերաշինութիւնը, Թաղ. Խորհըրդոյ կողմէ ներկայացեալ ծրագրի մը համեմատ որ հարկաւ պիտի առնուի Նախորդ Տնտես. Խորհրդոյ համարատուութեան մէջ։

Քաղ. Ժողովն Տնտես. Խորհրդոյ յանձնարարած էր Բերայի Թաղ. Խորհրդոյ կողմէ մատուցեալ երկու յայտագրեր, միով հին Ալքազարի Նախորդ վարձակալ Վանկէլ Վալեանոյի պարտուց խնդրոյն կարգադրութեան արդիւնքը կը հաղորդէր, եւ միւսով կը ներկայացնէր Ալքազարի վերաշինութեան հաշիւները կարեւոր բացատրութիւններով։

Բերայի Թաղ. Խորհուրդը յաջողած էր համաձայնութեամբ մը կարգադրել Ալքազարի խնդիրն եւ անոր կարասիներն առանձնելով արժէքն՝ 332 1/2 ոսկի՝ նորա 3000 ոսկի պարտուց վճարք նշանակած, իսկ վերաշինութիւնն 8359 ոսկւոյ ծախքով մը գլուխ հանած էր։

Տնտես. Խորհուրդն հին Ալքազարի վարձուց կարգադրման մասին որ եւ է դիտողութեան մը հարկ չնշմարելով քննութեան ենթարկեց շինութեան հաշիւներն եւ հաստատեց անոնց օրինաւորութիւնն. իսկ տեսնելով որ ծախուց գումարն արտօնեալ քանակութենէն աւելի տեղի գտած է եւ արուեստական քննութեան մը հարկն երեւան կուգայ, ուստի Թաղ. Խորհրդոյ հետ համախորհուրդ երկու մասնագէտ ճարտարապետաց քննութեան ենթարկեց շէնքն եւ հետեւեալ տեղեկագիրն առաւ։

« Մեծապատիւ Ատենապետ էֆէնտի Ազգային Կեդրոնական Վարչութեան Տնտես. Խորհրդոյ.

« Պատուարժան խորհուրդդ պատիւ ըրած էր մեզ պաշտօն տալ, արուեստական քննու-

թիւն կատարելու Բերայի ազգային կալուածներէն Ալքազար Թատրոնի շինութեան ծախուց, բաղդատմամբ նորա վիճակին հետ։

« Սոյն քննութիւն կատարեցինք։

« Նախ՝ Թաղական Խորհրդոյ մատուցած հաշիւներէն քաղելով շինութեան վերաբերեալ մասը, գտանք որ՝ 1300 կանգուն շէնքին 741,629 ղրշ կամ 6806 75/100 Օսմ. լիրա ծախսուած է, ըսել է իւրաքանչիւր քառակուսի կանգուն 570 ղրշ կամ 5 1/4 Օսմ. լիրա արժած է, ինչպէս որ հաշուեցուցի մանրամասնութենէն ալ կը տեսնուի։

Հաշուեցոյց Օսմ. լիրան 108 ղշի հաշուով

| | ղրուշ | | ղրշ |
|---|---|---|---|
| Օրակունք | 248,417·625 | կնի. հաշուով | 191 |
| Նիւթեղէնք | 402,428·375 | » » | 309·50 |
| Տէքօռ | 63,701 | » » | 48·50 |
| Ջանապան | 27,082 | » » | 21· |
| | 741,629 | | 570 |

« Ասկից զատ 25183 1/4 ղրուշ հատման համար ծախսուած է, որոյ իւրաքանչիւր կանգունը 25 ղրուշ արժած է։

« Նոյնպէս ստուգեցինք թէ շինութիւնն 1883 Մայիս 1ին սկսուած և Դեկտեմբեր 29ին աւարտելով, ըսել է 240 աւուր մէջ շինուած է։

« Շէնքն ալ մանրամասնօրէն քննելով տեսանք որ, շէնքին հոյակապ և գեղեցիկ ձեւն, ապահովական պայմաններն ի նկատ առնուած են։ Մանաւանդ ութամսեայ սուղ միջոցի մը մէջ շէնքն իր ժամանակին հասցնելով հանդերձ, խնայողական ամեն միջոց և հսկողութեան մասին ամեն խնամք գործադրուած լինելն խղճի մտօք կը հաստատեմք։

« Խնդրելով, Մեծապատիւ էֆէնտի, որ բարեհաճիք այս առթիւ ընդունիլ մեր յարգանաց հաւաստիքը, մնամք »

Պետրոս Մ. Նեմցեան — Միհրան Թ. Վարդանեան

Բերա 30 Յուլիս 1884

Սոյն տեղեկագրին ցոյց տուած ծախքն հայթայթուած է՝

| | |
|---|---|
| Փոխառութեամբ | 7341,45 |
| Կալուածական սնտուկէն | 987 |
| Այլ և այլ շահերէ | 30,68 |
| | 8359·13 ; |

Տնտես. Խորհուրդն՝ ինչպէս ի վերև նշանակեալ է, այս մասին ամեն օրինական քննութիւն կատարելէ յետոյ, գոհութեան արժանի գտաւ տարուած ջանքն և խնամքն, և շէնքը Բերայի թաղին մէջ իւր վայելչութեամբը, դիրքովը և տեսակաւ առաջին, և ստուգելով միանգամայն որ ծախքն օրինաւոր և հարկեցուցիչ պատճառանօք արտօնեալ գումարէն աւելի քանակութեամբ տեղի գտած է, իւր քննութեան արդիւնքն 1884 Օգոստոս 30 թուականաւ յայտագրով մը հաղորդեց Քաղաքական Ժողովոյ, որ ըստ արդեանց քննութեան, վաւերեց հաշիւներն և հաստատելով հին Ալքազարի կառատանց խնդրոյն կարգադրութեան մասին իւր որոշումը հաղորդեց Բերայի Թաղ. Խորհրդոյն։

Բերայ Շիշլիի գերեզմանատան կարգադրման խնդիրը. —

Տնտես. Խորհուրդն այս խնդրոյն համար Քաղ. Ժողովէն յանձնարարեալ երեք գրութիւններէն վերահաստ եղաւ որ, Պատրիարքական կոնդակաւ հաստատեալ Շիշլիի գերեզմանատան կարգադիր անուամբ Յանձնախումբ մը, գերեզմանատան որմոց շինութեան, մտից դրան, ճանապարհաց հարթութեան, հորերու և մի քանի սենեկաց շինութեան համար 1250–1500 ոսկիի պէտքը ցոյց տուած, և ապագային շինուելիք մատրան՝ սենեկաց և բարեզարդութեան համար հարկ ըլլալիք գումարներուն աղբիւր նշանակած է մասնաւոր գերեզմանատեղեաց վաճառումն, մտից և թաղման տուրքերէն, կտակներէ և նուէրներէ գոյանալիք հասոյթն, իսկ վերոյիշեալ գումարին հայթայթման մասին առաջարկած է կամա-

ւոր փոխառութիւն մ՚ընել ազգայիններէն, պայմանաւ որ այն փոխառութեան ի փոխարէն տրուելիք ընկալագրերն փոխանցելի լինին։

Տնտ. Խորհուրդն իրեն պատկանած մասերն ի քննին առնլով՝ գոհացուցիչ գտաւ Մասնախմբի աշխատութիւնն. և նկատելով որ մեր Շիշլիի Ազգային գերեզմանատունը Բերայի ընդարձակ թաղին մէջ անշուք վիճակ մ՚ունէր, բաղդատմամբ ուրիշ ազգաց գերեզմանատանց հետ, և ըստ ներկայացեալ յատակագծի անոր շինութիւնը խիստ պատուաբեր պիտի լինի Ազգին, նկատելով որ այն շինութեան համար ենթադրեալ գումարը չափաւոր է և ընդունելի գործին ծանրութեան հետ բաղդատմամբ. ուստի իւր հաւանութեան կարծիքը հաղորդեց Թաղ. Ժողովոյ. և այս յիշեալ գերեզմանատան պիտոյից գործածուելու համար Յանձնախմբին կատարած 250 ոսկւոյ մէկ փոխառութեան պարտագրին պայմաններն հաստատեց իւր 5 Յունիս 1385ի նիստին մէջ։

Բերայ Նարեկեան վարժարանի շէնքը. — Բերայի Թաղ. Խորհուրդն՝ Թաղին Նարեկեան վարժարանին շէնքին ընդարձակման անհրաժեշտ հարկը ցոյց տուած էր, յայտնելով որ անբաւական է ուսանող մանկտւոյն, և յիշեալ վարժարանին վրայ յարկ մը բարձրացնելու և վարի սրահներուն մէջ կարեւոր բարեփոխութիւններն ի գործ դնելու համար 500 ոսկւոյ ծախք մը ենթադրած, և առաջարկած էր արտօնել տեղւոյն կալուածոց հոգաբարձութիւնն, որ այն գումարն յանձնանձէ։

Տնտես. Խորհուրդը ճարտարապետական քննութեամբ ստուգելով առաջարկեալ շինութեան անհրաժեշտութիւնն հաւանեցաւ շինութեան. իսկ կալուածոց սնտուկէն խնդրուած փոխառման խնդիրը Թաղ. Ժողովոյ տնօրէնութեանը ենթարկեց։

Գարակէօմրիւկի Ազգ. շինութիւնք. — Նախորդ Տնտես. Խորհուրդն իւր անմիջական հսկողութեանը տակ առած էր Գարակէօմրիւկի Եկեղեցւոյ մատակարարութիւնը, նկատելով որ տեղւոյն Թաղ. Խորհուրդն անհրաժեշտ արծաթեղէն անօթներ ի վաճառ հանած, շինութեանց ձեռնարկած և Թաղային սնտուկը տագնապի մատնած է։

Տնտես. Խորհուրդն իւր նախորդին այն բանաւոր տնօրինութեան հետեւանօք կարգեալ ատժամեայ Թաղ. Խորհրդոյ բացատրութիւններէն տեղեկանալով որ կիսկատար մնացած շինութիւնք ձմրան եղանակին բոլորովին պիտի փճանային և աւերակ դառնան, որոց համար 40 հազար ղրշ.էն աւելի ծախք մ՚եղած էր արդէն, և թէ ըստ ճարտարապետական քննութեան, 200-250 ոսկւոյ գումարով մը շէնքերը կը կատարելագործուին, ուստի իւր կողմէ ևս աչքէ եղած քննութիւնը կատարելով՝ արտօնեց վերսկսիլ շինութիւնն. բայց որովհետև Եկեղեցւոյ սնտուկը չէր կրնար ենթադրեալ գումարը հայթայթել, 150 ոսկւոյ փոխառութիւն մը կատարեց՝ Ֆէրի-գիւղի Եկեղեցւոյ պատկանեալ և Պատրիարքարանի աւանդից արկղն դրուած դրամէն % 9 տոկոսով և ապահով պայմաններով, և 95 ոսկւոյ փոխառութիւն մ՚ալ կատարել տուաւ մասնաւոր անձէ մը։

Գնալը կղզիի կալուածական շինութիւնք. —

Գնալը կղզիի Ազգային կալուածներէն մի քանիները փլատակ վիճակի մէջ գտնուելուն՝ և մին ի հիմանէ վերաշինութեան պէտք ունենալուն, Տնտես. Խորհուրդն ի քննին կառնու այս մասին տեղւոյն Թաղ. Խորհրդոյ կողմէ մատուցուած բացատրութեանց յայտագրերն և հաստատ կը լինի որ, 190 ոսկւոյ գումար մը պիտի բաւէ յիշեալ շինութեան ծախուց և թէ՝ այն գումարն Թաղ. Խորհրդոյ Ատենապետ Մագըլըմեան Մկրտիչ էֆէնտի յանձն կառնու անտոկոս վճարել. ուստի Թաղ. Ժողովոյ հաւանութիւնն առնալէ յետոյ կ՚արտօնէ շինութիւնն առաջարկեալ եղանակաւ։

Այլ սակայն մի տարի յետոյ Թաղ. Խորհուրդը 1885 Մայիս 22 Թուականաւ կը յայտագրէ թէ, արտօնեալ շինութիւնն ինչ ինչ պատճառներով յետաձգուեր է, և Մալըմեան էֆէնտի չէ կարողացեր 190 ոսկւոյ մասին իւր խոստումն իրագործել, և անհրաժեշտ համարելով նորոգութեան գործը՝ ճարտարապետական քննութեամբ մը ստուգեր է որ 200 ոսկւոյ ծախք մը տեղի պիտի գտնէ, և իւր անդամներէն Պաղտասար էֆէնտի սեննեկայեան յանձներ է նորոգութեան գործն իւր վրայ առնուլ 145 ոսկւոյ գումարով մը յամբողջ ածելու, և եթէ չբաւէ այն գումարը, մնացեալն իբրև նուէր իւր անձնականէն հոգալու պայմանաւ. իսկ 145 ոսկւոյ գումարն որոշեր է իւր անդամներէն փոխ առնուլ անտոկոս, կալուածոց հասոյթէն մաս առ մաս վճարուելու պայմանաւ:

Տնտես. Խորհուրդը նկատելով որ, շինութիւնք արդէն արտօնեալ են յԱզգ. Կեդր. Վարչութենէ, և դրամի հայթայթման մասին տեղի գտած փոփոխութիւնք՝ Մալըմեան էֆէնտիի առաջարկած եղանակէն աւելի նպաստաւոր են Եկեղ. սնտուկին, դիտելի պարագայ մը չնշմարեց և հաւանեցաւ շինութեան և փոխառութեան՝ վերոյնշանակեալ եղանակաւ:

Գատըգիւղի հրկիզեալ ազգ. կալուածք.—

Տնտես. Խորհրդոյ պաշտօնավարութենէն առաջ յիշեալ հրկիզեալ կալուածոց վերաշինութիւնն արտօնուած ըլլալով՝ տեղւոյն Թաղ. Խորհուրդը մատոյց շինութեան հաշիւներն և այս առթիւ կատարուած փոխառութեան պայմանագիրն:

Տնտես. Խորհուրդը տեղական և ճարտարապետական քննութիւն մը կատարելէ յետոյ՝ գոհութեամբ վերահասու եղաւ որ, շինութեան հաշիւներն իրենց օրինաւորութիւնն ու ճշդութիւնը պահելով հանդերձ, վերաշինութիւնք՝ Շինութեան Յանձնաժողովոյ և Վսեմ. Ունճեան Աբիկ էֆ.ի անխոնջ և անձնուէր ջանից շնորհիւ՝ ամենայն խնայողութեամբ և խնամքով կատարուած են, Թաղ. Ժողովոյ կողմէ արտօնեալ 1500 ոսկւոյ գումարէն նուազ քանակութեամբ, այսինքն 1428 ոսկւոյ ծախք մը կատարուելով, և թէ այն գումարը Պատուարժան Յանձնաժողովոյ և Վսեմ. Աբիկ էֆէնտիի շնորհիւ անտոկոս փոխառութեամբ մը հայթայթուած է, անոր հատուցման համար ապահով եւ Ազգ. շահուց համաձայն պայմանագիր մը կնքուելով:

Տնտես. Խորհուրդն իւր քննութեան արդիւնքը Թաղ. Ժողովոյ յայտագրելէ յետոյ՝ փոխառութեան պայմանագիրն վաւերացման ենթարկեց. իսկ հաշուեցոյցերն՝ թէև օրինաւոր եւ գոհացուցիչ, սակայն ըստ խնդրոյ Թաղ. Խորհրդոյ՝ թաղեցւոց դիտողութեան ենթարկելով՝ պայմանաժամին լրումէն ետեւ հաստատեց անոնց օրինաւորութիւնը:

Հրկիզեալ կալուածներն՝ որ առաջ 6 կտոր էին եւ տարին 220 ոսկի վարձք կը բերէին, այժմ 9 կտոր քարուկիր կալուածներու վերածուած են, եւ 300 ոսկիէն աւելի վարձք կը բերեն: Թաղ. Խորհուրդն այն կալուածներուն հետ շինած է նաեւ Եկղ. խորհրդարանը, քարոզչի խուցն և ժամակոչի սենեակներն, որք այրած էին, եւ նորոգած է Եկեղեցին վերոյնշանակեալ գումարով:

Ներկայացեալ հաշուեցոյցին պարունակութիւնն է,

| | | |
|---|---|---|
| Նուիրեղէնք | Ղրշ. | 89478,25 |
| Փոխադրութիւն | » | 7900,50 |
| Օրականք | » | 54698,— |
| Զանազան ծախք | » | 3179,50 |
| Կլծ. տուրք | » | 943,50 |
| | | 156199,75 |
| Փոխառութիւն Յանձն. ձեռամբ | | 142560,— |
| Վազխոնի պատերուն քակմանէն | | 100,— |
| 5 Թրիէսթէ տէօշէմէներու գին | | 210,50 |
| Զեղչ զանազան գործողութիւններէ | | 1646,— |
| Փոխ. Վսեմ. Ունճեան էֆ.է | | 11713,25 |
| | | 156199,75 |

Իսկ. Ս. Խաչ Եկեղեցւոյ սեպհական հրկիզեալ կալուածները. —

Տեղւոյն Թաղ. Խորհուրդն Եկեղ. սեպհական հրկիզեալ կալուածոց գետնին մէկ մասին վրայ չորս քարուկիր կրպակներ կառուցանելու մասին առաջարկ մը ներկայած էր, տեղեկութիւն տալով որ նոյն կրպակաց շինութեան համար ենթադրեալ 200 ոսկւոյ ծախքը նուիրատուութեամբ հայթայթուած է արդէն։

Տնտես. Խորհուրդը շինութեան յատակագիծն ինկատ առնլէ եւ ճարտարապետական քննութիւն մ'ալ կատարել տալէ յետոյ, ընդունելի եւ շահաւէտ գտաւ Թաղ. Խորհրդոյ առաջարկն եւ Թաղ. Ժողովոյ հաւանութեանն ենթարկեց զայն ըստ օրինի։

Սակայն երկու ամիսներ անցնելէ յետոյ՝ Թաղ. Ժողովս աւելի բացորոշ տեղեկութիւններ պահանջած ըլլալով՝ Տնտես. Խորհուրդը նկատելով որ երկու ճարտարապետաց առանձինըն առանձինն մատուցած տեղեկագրերը մեկին կերպով կը բացատրէին, շինութեան վիճակն, ծախքը, բերելիք վարձքն եւ այլ պարագաներն, եւ նոր տեղեկութեանց հարկ չկար, բացատրեց շինութեան ստիպողութիւնն եւ վերստին խնդրեց նորա արտօնութիւնն, որոյ վրայ Ժողովս իւր հաւանութիւնը տուաւ, ճիշդ Տնտես. Խորհրդոյ հրաժարման միջոցին։

Տնտես. Խորհուրդը տեղեկութիւն առաւ որ, Թաղ. Խորհուրդը ձեռնարկեր է շինութեան, անշուշտ խնդրոյն ստիպողութեան պատճառաւ, եւ կռթնելով նախապէս Տնտես. Խորհրդոյ յայտնած հաւանութեան վրայ։

Իւսկիւտար գերեզմանատան շրջապատը. —

Թաղ. Ժողովոյ մէկ պաշտօնագրէն Տնտես. Խորհուրդը տեղեկացաւ որ Իւսկիւտարի գերեզմանատան բաժանակից երից ազգաց, այսինքն Հայոց՝ Յունաց եւ Հրէից յատուկ գերեզմանատեղեաց սահմանները միջազգային Յանձնաժողովոյ մը միջոցաւ ճշդուած, եւ միանգամայն որոշուած լինելով նոյն գերեզմանատունը շրջափակել որմով, այս անգամ յիշեալ գերեզմանատան ազգային բաժնին որմոյ շինութեան համար կազմեալ Յանձնախմբին տեղեկագիրն Ժողովս ընդունած եւ հաստատած է, եւ միայն յիշեալ տեղեկագրին պատճէնը Տնտես. Խորհրդոյ կը հաղորդուէր ի գիտութիւն։

Տնտես. Խորհուրդը նկատելով որ, առժամայն կուգայ խնդիրն իւր սեղանին վրայ, եւ Թաղ. Ժողովը փութացած է՝ առանց Տնտես. Խորհրդոյ կարծիքն լսելու՝ որմոյ շինութիւնն արտօնել, ուստի որեւէ դիտողութիւն մը չընելով հանդերձ՝ պարտաւորութիւն զգաց իւր հաւանութեան կարծիքն յայտնել, ինքզինքն ապագայ որեւէ պատասխանատուութենէ ազատ համարելով։

Ղալաթիոյ Եկղ. բակին նորոգման խընդիրը. —

Ղալաթիոյ Նախկին Թաղական Խորհուրդն արտօնութիւն կը խնդրէ Եկեղեցւոյն բակը նորոգելու, եւ ստիպողութիւն կուտայ խնդրոյն, յայտնելով որ՝ ապագային աւելի մեծ ծախքերու կենթարկուի Եկեղեցին, եթէ չնորոգուի բակին սալայատակն, եւ 15000 ղրուշի հանգանակութեան մը արտօնութիւն կը խնդրէ՝ նուիրատուութեան ձեւով վերոյնշանակեալ ծախքը կատարելու, եւ կը խոստանայ Եկեղեցւոյ սնտուկին վրայ բեռ չլինել եւ պարտական չընել սնտուկը։

Տնտես. Խորհուրդը պէտք եղած քննութիւնն ընելով՝ վերահասու կըլլայ որ, նշանակեալ 15000 ղրուշը չափէն բաւէ շինութեան, բայց նկատելով որ Թաղ. Խորհուրդը կը պնդէ որ բաւական էր ենթադրեալ գումարն, քանի որ կը յուսար թէ պանդուխտ ազգայինք ձրի պիտի աշխատէին, սոյն համոզմամբ Թաղ. Ժողովոյ հաւանութիւնը կստանայ եւ արտօնութիւն կուտայ նուիրատուութեան առաջարկին, 50-100 փարանոց եւ 5 ղրուշնոց տոմսակաց

միջոցաւ հաւաքելու, և Թաղ. Խորհուրդը թէև ի կատար կը հանէ բոլոր նորոգումն, սակայն իւր ընծայած առաջնորդութեան համեմատ մխանանակ հանգամանկութեամբ հայթայթելու ծախուց գումարն, Եկեղեցւոյ սնտուկին վրայ պարտք կը ծանրացնէ, որոյ քննութեամբն և կարգադրութեամբը կզբաղի արդի Թաղ. Խորհուրդը:

Վանայ Նարոշէնու եւ Արարուց Ս. Աստուածածին եկեղեցեաց վերաշինութիւնն.—

Սոյն երկուց Եկեղեցեաց վերաշինութեան համար տեղւոյն Առաջ. Տեղապահ Գեր. Պօղոս եպիսկոպոսի և Սրուանձտեանց Գեր. Գարեգին վարդապետի տեղեկագրոյ համեմատ 31 հազար ղրուշ ենթադրեալ ծախուց գումարն հայթայթելու հոգը յանձնուած էր տասն հինգ վանեցի ազգայնոց, որք՝ իբր Մասնախմբ ընդ նախագահութեամբ Գեր. Սըրուանձտեանց Հօր՝ ձեռնարկած էին 5 ղրուշէն մինչեւ 1 ոսկի քանակութեամբ նուիրատումսեր շրջաբերութեան հանել, ի Պօլիս գտնուող Վանեցւոց դիմելու պայմանաւ, և սոյն Մասնախմբին վաւերացումը կը խնդրուէր:

Տնտես. Խորհուրդն ընդունելի գտաւ յիշեալ առաջարկութիւնն և տուաւ իւր հաւանութիւնն, որոշելով սակայն 5 ղրուշէն աւելի քանակութեամբ նուիրատումս հրապարակ չհանել, չտարածել հանգանակութիւնն և աւելի Պօլիս գտնուող Վանեցի ազգայնոց ձեռնտուութեանը դիմել:

Տիվրիկի հրկիզեալ վարժարանին խնդիրը.—

Թաղ. Ժողովոյ յանձնարարութեան համեմատ, Խորհուրդս ուշադրութեան առաւ սոյն խնդիրն, և 16ի չափ Տիվրիկցի ազգայնոց մէկ հանրագրէն տեղեկացաւ՝ Տիվրիկու Արամեան վարժարանի հրկիզման դէպքին, որ թշնամութեան արդիւնք կը համարուէր, և տեղական կառավարութիւնը մի քանի անձինք իբր կասկածելի բանտարկած և դատաստանի ենթարկած էր: Այս վարժարանին վերաշինութեան համար նպաստ մը կը խնդրուէր:

Տնտես. Խորհուրդն առաջարկեց Քաղ. Ժողովոյ, որ յիշեալ հրկիզութեան դէպքը բարեխնամ Կառավարութեան ուշադրութեանը ներկայացնելով՝ բացատրէ քաղաքացւոց աղքատութիւնն և 500ի չափ ուսանողաց առանց վարժարանի մնացած լինելն, հրկիզելոց նպաստելու նպատակաւ կազմուած Պէյ Պալուրի հանգանակութեան Մասնաժողովէն օգնութեան գումար մը խնդրէ վերաշինութեան համար, և Քաղ. Ժողովը մատոյց սոյն Թագրիրը: Բաց աստի ըստ խնդրոյ կալուածական Հոգաբարձութեան Տիվրիկու, արտօնեց 50–100 փարանոց և 5 ղրշնոց նուիրատումսերու միջոցաւ հանգանակութիւն մը, ի նպաստ վերաշինութեան:

Իսկ. Իճատիէի մատրան շինութիւնն.—

Այս թաղին մէջ, հանգուցեալ Պալեան Կարապետ Ամիրայի կողմէ Եկեղ. համար նըւիրեալ գետնին վրայ մատուռ մը կառուցանելու առաջարկ մը ներկայացուած, և խնդրարկու Թաղեցիք անդրդուելի մնացած լինելով իրենց առաջադրութեան մէջ, Տնտես. Խորհուրդը յետ քննութեան՝ Թաղեցւոց նպատակն օրինաւոր գտաւ և Քաղ. Ժողովոյ հաւանութեանն ենթարկեց զայն, և յանձնեց նաև ի նպաստ կառուցանելի մատրան՝ հանգանակութեան համար ժապաւինեալ տումար մը, հաւանութեամբ Քաղ. Ժողովոյ. իսկ շինութեան հրամանագրի խնդիրն՝ Քաղ. Ժողովոյ տնօրէնութեանը յանձնուած է, իբր անոր ձեռնհասութեանը պատկանեալ խնդիր:

Չմշկածագի Սիսնա գիւղի եկեղեցին եւ վարժարանը.—

Չմշկածագի Սիսնա գիւղին մէջ Եկեղեցի և վարժարան մը կառուցանելու համար վիճակին Առաջ. Տեղապահին և գիւղացւոց կողմէ ներկայացեալ խնդիրներն Ազգ. Վարչութեան կրօն. և Քաղ. ժողովներն ուշադրութեան առ-

նելէ և չինութեան ալ՝ տեղն հաստատելէ յետոյ Տնտես. Խորհրդոյ յանձնարարուած էր քննել գործն և որոշել հանգանակելի գումարին քանակութիւնը ։

Տնտես. Խորհուրդը յետ քննութեան նկատելով որ, չինութիւնն 600 ոսկւոյ կը կարօտի, և թէ սոյն գումարին 300 ոսկւոյ չափը գիւղացիք յանձն կառնուին հայթայթել, որոշած դնտեց 300 ոսկւոյ հանգանակութիւն մը արտօնել, և հաւանութեամբ Քաղ. Ժողովոյ՝ յանձնեց ժապաւինեալ տումարն ։

Թօփգաբուի Եորաշէն փռան խնդիրը. —

Տնտես. Խորհուրդը յիշեալ փռան չինութիւնն արտօնելէ եւ ի նպաստ չին. ծախուց հանգանակութեան համար ժապաւինեալ տոմար մը յանձնելէ յետոյ, յանակնկալս լսեց որ չէնքն լրացած, եւ վարձու տրուած միջոցին վտանգուած եւ փլչելու վիճակին հասած է ։ Կատարուած քննութիւնք հաստատեցին որ, Նախորդ Թաղ. Խորհրդոյ կողմէ կարգեալ Շին. Յանձնաժողով մը՝ առանց ճարտարապետաց աջակցութեան եւ հսկողութեան՝ ինքնին կատարեր է չինութիւնն, եւ չէնքին նախքին որմերուն վնասեալ վիճակին առանց ուշադրութիւն ընծայելու՝ չէնքն անոնց վրայ կառուցեր, եւ ասկից յառաջ եկեր է վտանգը ։

Տնտես. Խորհուրդը՝ հաւանութեամբ Քաղ. Ժողովոյ արտօնեց վերաշինութիւնը, հրահանգելով Թաղ. Խորհուրդն որ փոխառութեամբ կատարէ չինութեան ծախքերն. եւ ըստ այսմ Թաղ. Խորհուրդն երեւելի. ճարտարապետաց յանձնած լինելով գործը, յուսալի է. որ քիչ ժամանակէն աւարտի ։

Շապին Գարահիսարի Անեղրի գիւղի եկեղ. չինութեան եւ պահանջքի խնդիրը. —

Անեղրի գիւղի եկեղեցին չինութեան պէտք ունենալուն՝ վիճակին Գաւ. Վարչ. կողմէ խնդիր եղած էր յիշեալ եկեղեցւոյ այս եւ այն անձանց վրայ ունեցած 600 ոսկւոյ մօտ պահանջքներուն գանձման մասին ազդու տնօրէնութիւն մը ըլլալ, եւ այս գործին համար յատկապէս ի Պոլիս գործակալ մը ցոյց տրուած էր ։

Տնտես. Խորհուրդը բանակցելով յիշեալ գործակալին հետ՝ պահանջից պարտական անձանց ցուցակը, զոր բերելու խոստմամբ մեկնեցաւ եւ միւսանգամ չներկայացաւ ։

Նարլը գաբուի Խորէնեան վարժարանը .

Նարլը գաբուի վարժարանին չէնքն անյարմար՝ անձուկ եւ անմիջական նորոգութեան կարօտ լինելուն՝ Տնտես. Խորհուրդն արտօնեց սոյն ստիպողական նորոգութիւնը, ծախքն հանգանակութեամբ հայթայթելու պայմանաւ ։

## 5. ԹԱՂԱՅԻՆ ԶԱՆԱԶԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Սթիմարաճեան Էֆ.ի պահանջքի խնդիրը . —

Տնտես. Խորհուրդն երբ պաշտօնի կը ձեռնարկէ, իւր նախորդաց նման Քաղ. Ժողովէն իրեն կը յանձնուի սոյն ծանուցեալ խնդիրը հետեւեալ պաշտօնագրով ։

Մեծապատիւ Ատենապետ Էֆէնտի
Ազգ. Վարչութեան Տնտես. Խորհրդոյ,

Անկէ առաջ Քաղ. Ժողովը Գընալը Կղզի Եկեղեցւոյ պարտուց խնդրոյն կարգադրութեան մասին նախորդ Տնտես. Խորհրդոյ կողմէ մատուցեալ տեղեկագրի մը վրայ սոյն խնդրին ուշադրութեան առնլով՝ պարտուց բարձման միջոցներուն վրայ բանակցեցաւ թէ՛ Թաղ. Խորհրդոյ եւ թէ՛ նոյն իսկ Սթիմարաճեան Եարթիկ Էֆէնտիի հետ, որ մէկ կողմէ իւր առնելիքը կը պահանջէր հանապազօրեայ բողոքներով, և միւս կողմէ իբր գիտակ սյն նիւթական միջոցներու՝ որ կրնային սոյն պարտուց բարձման սատարել, իւր դիտողութիւններն և տեղեկութիւններն կը ներկայացնէր իրաց ելքն դիւրելու համար ։ Քաղաքական Ժողովս այս բանակցութեանց վրայ նկատելով

որ, Աթխմարեան էֆէնտին դիւրութիւններ և միջոցներ ցոյց կուտայ Եկեղեցւոյ այս հինօրեայ պարտուց վճարման համար, և կը խոստանայ անձամբ իւր աջակցութիւնը մատուցանել այս մասին, զինքը Թաղ. Խորհրդոյ անդամ կարգած և յանձնարարած էր Խորհրդոյն որ, գործակցութեամբ Աթխմարեան էֆէնտիի ստանձնէ սոյն պարտուց կարգադրութեան հոգն, այդ նպատակաւ կարելի խնայողութիւններն ի գործ դնէ Թաղային մատակարարութեան մէջ, առանց անշուշտ Եկեղեցւոյ պայծառութիւնն և վարժարանին բարեկարգութիւնը խանգարման ենթարկելու, սահմանէ այն ամեն միջոցներն, որ բանաւոր և հնարաւոր կը թուին սոյն նպատակին հասնելու համար, և մատուցանելով Թաղ. ժողովոյ որոշման փութայ տակաւ առ տակաւ բառնալու սոյն պարտքն ։

Այս անգամ Գընալը կղզւոյ Թաղ. Խորհուրդն յայտագրով մ'առաջարկած լինելով որ, ի նպաստ սոյն պարտուց բարձման հանգանակութեան ձեռնարկելու արտօնութիւն տրուի, և ժապաւինեալ տումար մը յանձնուի, և միանգամայն որոշուի Մայրաքաղաքիս Եկեղեցեաց մէջ ափսէ շրջագայեցնել նոյն նպատակին համար, Թաղ. ժողովն առաջարկուած այս կրկին միջոցներուն երկրորդն մեկուսի թողուց և առաջինն ընդունելով՝ հաւանեցաւ հանգանակութեան և որոշեց յանձնարարել Պատուարժան Խորհրդոյդ որ հարկ եղած ժապաւինեալ տումարն յանձնէ Թաղ. Խորհրդոյն հանգանակութիւնն սկսելու համար, և պաշտօնական յայտարարութեամբ մը հրաւէր կարդայ ազգայնոց, որպէս զի Գնալը կղզւոյն Եկեղեցւոյ պարտուց բարձման առատօրէն, ընձեռելով իրենց նպաստն ։

Թաղ. ժողովս սոյն տնօրէնութիւնը հաղորդելով Պատուարժան Խորհրդոյդ՝ կը յանձնարարէ որ հաճի ըստ այսմ պարտ ու պատշաճն ի գործ դնել Թաղ. Խորհրդոյ հետ բանակցութեամբ և անոր ընծայել ամէն եղած դիւրութիւններն, որ կարենայ յարդիւնս ածել սոյն հանգանակութեան գործն և բառնալ սոյն պարտքն, որու երեսէն կը տագնապի չարաչար Աթխմարեան էֆէնտին ։

Մնամք աղօթարար

ՆԵՐՍԷՍ

Կ. Պոլիս, 27 Ապրիլ 1884

Սոյն պաշտօնագրով յանձնարարեալ տումարն պատրաստուած միջոցին՝ Տնտես. Խորհուրդը հետեւեալ Բ. պաշտօնագիրը կընդունի ։

Մեծապատիւ Ատենապետ էֆէնտի
Ազգային Տնտես. Խորհրդոյ .

Թէև անկէ առաջ, որոշմամբ Քաղաքական Ժողովոյ յանձնարարուած էր Պատուարժան Խորհրդոյդ՝ Գնալը Կղզիի Եկեղեցւոյ պարտուց բարձմանն համար՝ հանգանակութեան տումար մը յանձնել տեղւոյն Թաղական Խորհըրդին, սակայն Քաղաքական Ժողովս այս անգամ Աթխմարեան Բարթիկ էֆէնտիի մատուցած մէկ խնդրագրէն տեղեկանալով որ Թաղական Խորհուրդն չպիտի կարենայ սոյն հանգանակութեան գործին գլուխ կանգնիլ և զայն արդիւնաւորել, որոշեց՝ ըստ խնդրոյ Աթխմարեան էֆէնտիի՝ ուրոյն մասնախումբ մը կազմել սոյն հանգանակութիւնն կատարելու համար, և Պատուարժան Խորհրդոյդ յանձնեց որ մեր Գեր. Փոխանորդին հետ խորհըրդակցութեամբ՝ կազմակերպէ զայն և սկսիլ տայ իւր պաշտօնն, ամէն եղած դիւրութիւններն մատուցանելով իւր կողմէ ։ Հետեւապէս կը յանձնարարեմք Պատուարժան Խորհրդոյդ որ բարեհաճի Քաղաքական Ժողովոյ սոյն որոշման համաձայն՝ ի գործ դնել պարտ ու պատշաճն, և իւր խնամքն նուիրել գործին յաջողութեան համար ։

Մնամք Աղօթարար

ՆԵՐՍԷՍ

Կ. Պոլիս, 9 Յունիս 1884

Սոյն պաշտօնագրին համաձայն Տնտես. Խորհուրդը Գեր. Փոխանորդ Հօր հետ խորհրդակցութեամբ,

Վսեմ. Նորատունկեան Յակոբ
Մեծ. Մանիկեան Սենեքերիմ
» Մաղլմեան Մկրտիչ

էֆէնտիներէն բաղկացեալ մի մասնախումբ կը կազմէ եւ հանգանակութեան տումարը կը յանձնէ Սթիմարաճեան էֆ.ի ։

Այս Մասնաժողովն առանց պաշտօնի ձեռնարկելու՝ կը հրաժարի, եւ Սթիմարաճեան էֆէնտի յուսահատ կառաջարկէ որ իւր պահանջքին կարգադրութեան հոգը մի անգամ ձեռնհաս կրօնականաց յանձնելու փոյթ լինի, եւ Տնտես. Խորհուրդը Պատ. Գեր. Փոխանորդ Հօր կը հաղորդէ սոյն առաջարկն՝ հրաւիրմամբ ձեռնհաս եկեղեցական Հարց՝ կարելին եւ հնարաւորն ի գործ դնելու համար ։

Այլ սակայն Տնտես. Խորհուրդը Սթիմարաճեան էֆ.ի խնդրոյն կարգադրման մասին ի նորոյ յանձնարարութիւն կընդունի Քաղ. Ժողովէն, եւ նկատելով որ ամեն ջանք ի գործ դրած լինելով շարունակ, յիշեալ խնդրոյն ելք մը տալու համար միջոցներն սպառած են այլ եւս, ուստի Քաղ. Ժողովոյ կը վերապահէ Սթիմարաճեան էֆ.ի պահանջից խնդրոյն կարգադրութիւնը, կարծիք յայտնելով միանգամայն որ ամեն միջոց ձեռք առնուելով՝ ազդեցիկ անձերէ Յանձնաժողով մը կազմուի՝ հանգանակութեան գործն ի գլուխ հանելու պաշտօնով, եւ միւս կողմէ Եկղ. սեփհական կալուածոց արդիւնքէն մաս մը սահմանուի այս պարտուց վճարման, որովք միայն կարելի կը թուի վերջ տալ խնդրոյն ։

**Գօյաճի գիւղի թատերական արդիւնքը. —** Սոյն խնդիրն անլոյծ կը մնար նախորդ շրջանէն ։ Ի նպաստ Գօյաճի գիւղի Եկեղեցւոյ շինութեան՝ թատերական ներկայացում մը գոյացեալ հասոյթը Թաղ. Խորհուրդն ի պէտս Եկեղեցւոյ գործածած լինելով շինութեան Յանձնաժողովն ստիպմամբ կը պահանջէր զայն, եւ այս աննշան խնդիրն Թաղ. Խորհրդոյ եւ Յանձնաժողովոյ մէջ վէճի նիւթ եղած լինելով՝ Պատրիարքարանի բաւական զբաղում կը պատճառէ, ինչպէս նաեւ Տնտես. Խորհրդոյ ութ նիստերուն մէջ խնդիր կը լինի ։

Ամբողջհասից գումարն էր 2500 ղրշ. որոյ 646 1/2 ղրշ.ը Եկեղեցւոյ քակման օրականի եւ 170 ղրշ.ը տոմսակաց տպագրութեան եւ զանազան ծախուց վճարեալ ըլլալով մնացեալը յանձնուեցաւ Յանձնաժողովոյ ։

**Մ. Մօսիկ անուն անձի մը պահանջքը Հիսարու Եկեղեցւոյ սնտուկէն. —** Տնտ. Խորհուրդն իւր նախորդէն ժառանգեց նաեւ Մ. Մօսիկի պահանջքի անուամբ խնդիր մը։ Հիսարու հրաժարեալ Թաղական Խորհուրդը՝ Պատրիարքարանի ազդարարութեանը հակառակ՝ չուզելով վճարել յիշեալ անձին ունեցած 50 ոսկւոյ տոկոսաւոր պահանջքն եւ պահանջատիրոջ զգացումը վիրաւորելով, տեղի կուտայ որ Մ. Մօսիկ դիմէ Բ. Դրան ։

Յիշեալ գումարը տոկոսներով եւ դատարանի վճռած ծախքերով կրկնապատկուած էր, զոր պիտի վճարէր Հիսարու Եկեղեցւոյ սնտուկն անխուսափելի կերպիւ, եւ իրր արդիւնք՝ հրաժարեալ Թաղ. Խորհրդոյ անխոհեմութեան ։

Տնտես. Խորհուրդը 15 նիստերու մէջ զբաղեցաւ սոյն խնդրով եւ միշտ պահանջատիրոջ ազգային զգացմանց կոչումն ընելով յաջողեցաւ վերջապէս սիրաշահիլ զայն, եւ Հիսարու նորընտիր Թաղ. Խորհրդոյ եւ պահանջատիրոջ ներկայութեան համաձայնեցնել զանոնք՝ 60 ոսկւոյ գումար մը վճարելով վճռագրերը ջնջելու. ըստ այսմ համաձայնութեան Տնտես. Խորհուրդէն 16 ոսկւոյ կանխավճար մ'ընել տալով՝ մնացեալ 44 ոսկւոյ վճարումն ապահովեց, Եկեղեցւոյ սեփհական մէկ տան վարձքէն յառաջիկայ Մայիս ամսոյ մէջ գանձելի գումարովն ։

**Խասգիւղի Շահնազարեան վարժարանը.—**

*Տնտես. Խորհուրդը պաշտօնական եւ անպաշտօն աղբիւրներէ ստուգելով որ, յիշեալ վարժարանի շէնքը վտանգաւոր եւ երկիւղալի վիճակի մէջ կը գտնուի, եւ թէեւ հրահանգ կուտայ տեղւոյն Թաղ. Խորհրդոյն՝ վտանգին առաջքն առնլոյ համար պէտք եղած միջոցները ի գործ դնելու, եւ միանգամայն աւելորդ ընտանիքները անկէ ճամբելու, սակայն Թաղ. Խորհուրդն ինչ ինչ նկատումներով չուզեր ստանձնել խնդիրն, եւ Տնտես. Խորհուրդը կըստիպուի մի Յանձնախումբ կարգել եւ անոր պաշտօն տալ՝ խորհրդակցութեամբ ընդ. Թաղական Խորհրդոյն ապահովութեան ամեն միջոցներն ի գործ դնելու։*

*Նոյն Յանձնախմբին գործառնութեանց տեղեկագիրը դեռ մատուցուած չէ։*

**Գուրուչէշմէի Եկեղ. անօրէները.—**

*Տեղւոյն քանի մը Թաղ. Խորհուրդները յաջորդաբար խնդիր կընէին գիւղին Եկեղեցական անօթոց եւ գոյից արձանագրութեան մասին, գործին կարեւորութիւնը ցոյց տալով եւ մեծ ստիպողութիւն ընծայելով։*

*Տնտես. Խորհուրդն այս մասին ծագելիք անպատեհութիւնները գուշակելով՝ մինչեւ իսկ երկիցս Պատրիարքարանի կողմէ պաշտօնեայ յուղարկեց անօթոց եւ գոյից քննութիւնն եւ արձանագրութիւնը կատարելու պաշտօնով, սակայն մերթ Նախորդ համարատու Թաղ. Խորհրդոյ Դիւանին եւ մերթ անօթոց պահապան կարգուած երկաթագործ Նահապետեան Յովակիմ անուն անձի մը բացակայութեանը պատճառաւ ոչինչ կրցան գործել պաշտօնեայք, եւ դեռ անորոշ վիճակի մէջ կը մնայ սոյն խնդիրն։*

**Մքքարիէ տուրքը.—**

*Արդարութեան Վսեմ. պաշտօնէին ծանուցագրոյն եւ Ձեր Բարձր Սրբազնութեան յանձնարարութեան համեմատ, Տնտես. Խորհուրդն ազդարարեց Մայրաքաղաքիս Թաղական Խորհրդոց, որ ազդուապէս հրահանգտան՝ որոց որ անկ է՝ որպէս զի հակառակ կայս. կառավարութեան կամաց եւ հրամանին աւելի գումարներ չգանձեն անհատներէ ծննդեան՝ վախճանմանց, ճամբու անցագրի և միանգամայն մարդահամարի գործողութեան ատեն դուրս մնացողներուն ի նորոյ արձանագրուելուն առթիւ, եւ պատասխանատւութիւն չհրաւիրեն թէ իրենց եւ թէ Թաղ. Խորհրդոց վրայ։*

**Գասմ փաշայի Եկեղ. գոյից եւ անօթոց խնդիրը.—**

*Գասմ փաշայի Եկեղեցւոյ սեփական գոյից եւ անօթոց մասին խնդիր ծագած ըլլալով հրաժարեալ եւ նորընտիր Թաղ. Խորհրդոց միջեւ, Տնտեսական Խորհուրդն յատուկ քննիչի մը միջոցաւ պատրաստուած երկօրինակ գոյից տումարաց մին յանձնեց արդի Թաղ. Խորհրդոյ, եւ միւսն ի պահ դրաւ իւր Դիւանին մէջ։*

**Ղալաթիոյ հրաժարեալ Թաղ. Խորհրդոյ խնդիրները.—**

*Տնտես. Խորհուրդը յանակընկալս կը լսէ որ, Ղալաթիոյ Թաղ. Խորհուրդն (այժմ հրաժարեալ) Եկեղեցւոյ գործերը լքեալ վիճակի մէջ թողլով խորհրդարանը կնքեր, եւ շաբաթէ մ'ի վեր հեռացեր է իւր պաշտօնէն, ուստի ստիպողաբար Քաղ. Ժողովոյ կը ներկայէ իրաց վիճակն եւ Ժողովը անմիջապէս մի Յանձնաժողով կը կարգէ եւ անոր կը յանձնէ Թաղական Խորհրդոյ պաշտօնը։ Սոյն տնօրէնութեան վրայ հրաժարեալ Թաղ. Խորհուրդը կամք ցոյց կուտայ շարունակել իւր պաշտօնն, եթէ գոհացուցում տրուէին իւր պահանջմանցը, պահանջումներ, որ սոսկ Կալուածոց Հոգաբարձութեան պաշտօնին միջամտելու նպատակն ունէին, եւ բնաւին չէին վերաբերէր Թաղ. Խորհրդոյ պաշտաման։*

…ային Տնտես. Խորհուրդը քննութեան …թարկէ Թաղ. Խորհրդոյ պահանջումները … կը տեսնէ որ, կալուածոց Հոգաբարձութիւնն իր պաշտօնավարութեան առաջին օրէն ամենայն օրինաւորութեամբ և արդիւնաւոր եղանակաւ վարած է իր պաշտօնն, հետեւաբար այդ պահանջումներն ուրիշ բանի չեն ծառայեր, եւեթ վիրաւորել Պատուարժան Հոգաբարձութեան անդամոց արժանիքն. ուստի իր քննութեան արդիւնքը կը յայտագրէ առ Թաղ. Ժողովն :

**Ազգային վ-ժ-ի գետին մը Յենի-գիւղ. —**

Բաւական տարիներէ ի վեր Պալատու և Ենի գիւղի Թաղ. Խորհրդոց միջև Պալատու Ենկ. վ-ժ-էն գետնի մը խնդիր ծագած էր :

Տնտես. Խորհուրդն երկուց Թաղ. Խորհըրդոց ներկայութեան կարգադրեց խնդիրն եւ վերջ տուաւ, երկուց եկեղեցեաց նպաստաւոր եղանակաւ :

## 6. Տ. ՆԵՐՍԷՍ ՊԱՏՐԻԱՐՔԻ ՆՈՒԻՐԵԱԼ ՊՍԱԿՆԵՐԸ

Տնտես. Խորհուրդը Մայր Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ յանձնելով Հոգելոյս Ներսէս Արքազուն Պատրիարքի յիշատակին նուիրեալ պսակներն ի պահ, ընկալագիր մը առաւ և պահեց զայն աւանդից արկղը : Նուիրեալ անթառամ պսակներն են :

Մէկ արծաթեայ պսակ՝ Բէթէրպուրկի Հայ ուսանողաց կողմէ.

Մէկ պսակ թագաձև և ոսկեթել բանուած Մայր Եկեղեցւոյ Դպրաց դասուն կողմէ.

Մէկ պսակ մանիշակագոյն՝ Աշոյ Միացեալ ընկերութեան Ներսիսեան Վարժարանի կողմէ.

Մէկ պսակ շէնէլ՝ Խաս-գիւղի Թաղական Խորհրդոյ կողմէ.

Մէկ պսակ՝ Հայուհեաց ընկերութենէ.

Մէկ պսակ ոսկեփունջ՝ Պէշիկթաշի Թաղ. Խորհրդոյ կողմէ.

Մէկ պսակ՝ Թիճարէթի Հայ ուսանողներէ.

Մէկ պսակ՝ մէջ տեղը խաչելութիւնով.

Մէկ պսակ՝ մէջ տեղը Ս. Պատրիարքի կենդանագիրն.

Մէկ պսակ մանիշակագոյն և կանանչ տերեւներով՝ Մոսկուայի ազգայնոց կողմէ.

Մէկ պսակ մանիշակագոյն՝ Ազնուափայլ Տիկին Զարիֆիէ.

Մէկ պսակ ճերմակ ծաղիկներով՝ Արձագանք լրագրի խմբագրութենէ.

Մէկ պսակ դրօշակ՝ Դպրոցասէր տիկնանց ընկերութեան կողմէ :



# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

## ԿՏԱԿԱՑԻՆ

1. ԿՏԱԿԱԳՐԵՐ. — 2. ՊԱՅՄԱՆԱԳՐԵՐ. — 3. ԿՏԱԿԱՑԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ. — 4. ՆՈՒԷՐՆԵՐ ԵՒ ՆՊԱՍՏՆԵՐ.

*Ազգին կտակաց տնօրէնութիւնը թէև ուրոյն Հոգաբարձութեան մը կը պատկանի ըստ Սահմանադրութեան, սակայն քանի մը տարիներէ ի վեր Հոգաբարձութեան մը կազմութեան մասին Քաղ. Ժողովոյ ջանքերն ապարդիւն մնալուն՝ Տնտես. Խորհուրդն, ինչպէս բացատրած է այս տեղեկագրի նախաբանին մէջ, իրեն վերաբերեալ բազմաթիւ խնդիրներով զբաղած ատեն՝ պարտաւորեալ էր նաև կտակաց Հոգաբարձութեան պաշտօնն ալ վարելու, և հետևաբար ներկայացեալ կտակաց և պայմանագրոց քննութեան և վաւերացման գործն ալ ստանձնելով կարող եղաւ վարել շարունակաբար սոյն պաշտօնն, և ահաւասիկ իւր աշխատութեանց արդիւնքը։*

### 1. ԿՏԱԿԱԳՐԵՐ

*Տնտես. Խորհուրդը հետևեալ քննեց՝ բարեփոխեց և վաւերացուց.*

*Թուական Վաւերացման*

1. 1884 Յունիս 11 *Հանգուցեալ Պասմաճի Գրիգոր աղայի ամուսին Տիկին Բրաբիօն Սեթբարեանի 1884 Մայիս 31 թուականաւ կտակագիրն, որով կտակարարն իւր սեպհականութիւնն եղող Պոլիս Ճէվահիր Պէզէսթէնը՝ Շէրիֆ աղա փողոց 127 թիւ մէկ խանութ տօլապի կէտիկն Իւսկ. Ս. Խաչ եկեղեցւոյ կը կտակէր ինչ ինչ պայմաններով։*

2. 1884 Յուլիս 12 *Բերայի բնակիչներէն Տ. Յարութիւնեան Յովհաննէս աղա և կինը Տիկին Եղիսաբէթի 1884 Յունիս 23 թուականաւ կտակագիրն, որով կտակարարք Բերա, Այնալը-Չէշմէ, Չէրէն փողոց 14 թիւ տուներնին կը նուիրեն Ազգ. Հիւանդանոցի հաստատութեան։*

*Ի վերջէ սոյն կտակագրին ջնջումն հարկ լինելով՝ ըստ որոշման Քաղ. Ժողովոյ՝ ջնջման գործողութիւնը կատարուած է։*

3. 1884 Օգոս. 8 *Մայրապետ Հնազանդ Գասպարեանի 1884 Յուլիս 20 թուականաւ կտակագիրն, որով կտակարարը՝ Խասգիւղ, Թուրշունճը մահալէ, Չէշմէ փողոց թիւ 18 փայտաշէն տունը Գալատա Ս. Հրեշտակապետ Եկեղեցւոյ կտակեց ինչ ինչ պայմաններով։*

4. 1884 Օգոս. 29 *Նալպանտ Գէորգ Յովհաննէս աղա Շէրպէթճեանի 1884 Յուլիս 23 թուականաւ կտակագիրն, որով՝ Բերա Բանկալթիի Թաղը Պէօյիւք-տէրէ ճատտէ թիւ 119 երկու հարիւր քսան և ինն կնգ. գետինը Բերայի Ս.*

Նորոգութեան Եկեղեցւոյ կը նուիրուէր ինչ ինչ պայմանօք ։

5. 1884 Դեկտ. 26 Բնիկ Տիգրանակերտցի Արժ. Սահակ վարդապետ Շահինեանի 1884 Հոկտ. 24 Թուականաւ կտակագիրն, որով Արժ. կտակարարն իւր գոյքերն Ազգային Հիւանդանոցի հաստատութեան կտակած էր, փոխարէն՝ ցմահ նոյն հաստատութեան մէջ պատսպարուելու պայմանաւ ։

6. 1885 Փետր. 6 Լանկա գօլի սափրիչ արհեստաւորաց 1884 Սեպտ. 27 Թուականաւ միյաւելուածոյ կտակագիրն՝ որ կտակարարաց 1874 Յուլիս 19 Թուականաւ վաւերացեալ մէկ կտակագրին կը վերաբերէր, և որով՝ Հիւանդանոցի հաստատութեան նուիրած էին Կ. Պոլիս Մօլա Թաշի, Եկղ. փողոց 30 Թիւ սափրիչի մը կրպակն ինչ ինչ պայմանօք ։

7. 1884 Դեկտ. 15 Բէրբէրեան Արիս աղայի կողակից Տիկին Սօֆիկ Սիմոնեանի 84 Դեկտ. 9 Թուականաւ կտակագիրն, որով կտակարարը՝ Կէտիկ փաշա, Քասաըն Ալի Թաղ Նէվիէ ճատտէ Թիւ 14 տունը Մայր Եկեղեցւոյ կտակեց ։

8. 1884 Դեկտ. 15 Ձէտճի Յակոբ աղայի ամուսին Տիկին Էֆթիկ Մնացականեանի 1884 Դեկտ. 4 Թուականաւ կտակագիրն, որով՝ Շուկան Կիւլտաւյուճը փողոց 12 Թիւ երկու կէտիկով ոսկերչի կրպակն Մ. Եկեղեցւոյ կտակուած էր, ինչ ինչ պայմաններով ։

9. 1885 Փետր. 27 Յրէնկեան Կարապետ աղայի կողակից Տիկին Բէմոյէ Ս. Քորանեանի 1884 Նոյմ. 28 Թուականաւ կըտակագիրն, որով՝ Էէնիգափու Ալթօյաճի փողոց Թիւ 11 Եօղուրթճեանէի կէտիկին 120 բաժնէն 40ը նոյն Թաղի Ս. Թադէոս Առաքելոց Եկղ. կտակուած էր, ինչ ինչ պայմանօք ։

10. 1885 Մարտ 13 Գափամաճեան Գէորգ էֆէնտիի 1885 Փետր. 28 Թուականաւ կտակագիրն, որով կտակարար էֆէնտին՝ 5000 դրուշ կտակեց Նարլը-գաբուի Ս. Յովհաննէս Եկեղեցւոյ, և կանխաւ յանձնեց կտակեալ գումարը ։

11. 1885 Փետր. 27 Բաղդիշու Ղուլթիկ գիւղացի Յովհաննէս Կիրակոսեանի 1885 Յունվար 25 Թուականաւ կտակագիրն, որով յիշեալն իւր ամբողջ գոյքերն ամուսնոյն, Տիկին Տիրպէր Յակոբեանի կը կտակէր ։

12. 1884 Փետր. 8 Էտիլեան Գրիգոր աղայի ամուսին Ակնեցի Տիկին Մարիամ Ալէքսանեանի 1884 Յունվ. 23 Թուականաւ կըտակագիրն. որով՝ ի Գալըգբազար 179 Թիւ Ձըչըճըի կրպակը Խասգիւղի Ս. Ստեփաննոս Եկեղեցւոյ և տեղւոյն ազգասէր խնամակալութեան կտակուած էր ինչ ինչ պայմաններով ։

13. 1884 Փետր. 19 Մինթանճեան Գեր. Գրիգոր եպիսկոպոսի 84 փետր. 10 Թուականաւ կտակագիրն. որով Գեր. կտակարարն կը ծանուցանէր իւր ժառանգորդաց և այլոց թէ, ոչինչ թողած է ։

14. 1884 սեպ. 12 Մուրատեան հանգուցեալ Կարապետ աղայի 1866 սեպ. 7 թուականաւ կտակագրին մէկ պատճէնն, որոյ բնագիրը Գատըգիւղի հրդեհին ժամանակ այրած լինելով՝ անոր վաւերացեալ օրինակըն խնդրուած էր ։

## ՊԱՅՄԱՆԱԳՐԵՐ

15. 1884 Մարտ 21 Իւսկ. բնակիչներէն Յակոբ աղա և Օր. Գոհարինէ Գրատէրեանց 1884 Մարտ 2 թուականաւ պայմանագիրն, որով՝ իրենց սեպհականութիւնն եղող Սէլամիէ թաղ, Պաքքալ փողոց, Թօփհանէլի զատէ Մուստաֆա էֆէնտի վագֆէն 33 թիւ փայտաշէն տունը Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը կը յանձնէին ինչ ինչ պայմաններով ։

16. 1884 Մարտ 21 Յարութիւնեան Օր. Թագուհի և Բերրոնէի 1882 Յունիս 23 թուականաւ պայմանագիրն, որով՝ Իսկ. Սէլամի թաղն, Տէյիրմէն փողոց, թիւ 32 տունը Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը կը յանձնէին ինչ ինչ պայմաններով ։

17. 1834 փետր. 29 Սամաթիոյ Ս. Գրիգոր քահանայի մայր Տիկին Յուլիանէ Սարգիսեանի և Նարլը գափուի Թաղ. Խորհրդոյ միջեւ կնքուած պայմանագիրն, որով յիշեալ տիկին՝ Սամթ. Քօճա Մուսթաֆա փաշա թաղ, Սուլու Մանաստըր ճատտէ, թիւ 112 քարուկիր տունը Նարլը գաբուի Թաղ. Խորհրդոյ տրամադրութեանը ներքեւ դըրած էր իբր աւանդ, կատարուած փոխառութեան մը փոխարէն ։

18. 1884 Յունիս 7 Դարբին Տիգրան աղա Պօղոսեանի 1884 Ապրիլ 29 թուականաւ պայմանագիրըն, որով՝ Իւսկ. Սէլամի թաղը Տէյիրմէն փողոց 2 թիւ փայտաշէն տունն և Պօլիս Սուլթան Պայազիտ Սէյյան պաշի Նազուպ աղա թաղն Քալայճը փողոց թիւ 25 Չիլինկիրի կրպակին կէտիկն՝ իբր պարզ աւանդ՝ կը յանձնուէր Ս. Խաչ Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը, ինչ ինչ պայմաններով ։

19. 1884 Յունիս 27 Քրիսեան Մկրտիչ աղայի և տիկին Մարիամի 1884 Յունիս 25 թուականաւ պայմանագիրն ։ Այն պայմանագրով նշանակեալք իրենց սեպհականութիւնն եղող ի Գատըգիւղ Օսման աղա թաղ, Ցէնէրի ճատտէ թիւ 7 այգին Իւսկ. Ս. Կարապետ եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը կը յանձնէին, իբր պարզ աւանդ ։

20. 1834 Նոյմ. 22 Մ. Համբարձում աղա Ստեփանեանի 1882 Յուլ. 7 թուականաւ պայմանագիրն, որով՝ Իւսկ. Սէլամի թաղն Չիլհատար փողոց թիւ 73 տունըն Ս. Խաչ Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը կը յանձնուէր իբր պարզ աւանդ ։

21. 1885 Փետր. 20 Ոսկերիչ Մկրտիչ աղա Յակոբեանի կողմէից Տիկին

Ակիւլինէ Տ. Միքայէլեանի 1885 Յուն. 26 թուականաւ պայմանագիրն, որով Իւսկ. Սէլամի թաղն Տ. Աբրահամ փողոց թիւ 12 փայտաշէն տունն՝ իբր պարզ աւանդ՝ Ս. Խաչ Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը կը յանձնուէր, ինչ ինչ պայմաններով:

22. 1884 Սեպ. 5 Գասպար փիւղի Հրկիզեալ կալուածոց վերաշինութեան Յանձնաժողովոյ և Թաղ. Խորհրդոյ միջեւ կնքուած 1884 Օգոստոս 11 թուականաւ պայմանագիրն, ի մասին յիշեալ վերաշինութեան առթիւ կատարուած փոխառութեան հատուցման:

23. 1885 Ապ. 3 Սամաթիոյ բնակիչներէն Անդրէասեան Տիգրան աղայի պայմանագիրն, որով Լանկա Քեաթիպ Գասըմ թաղ Նաթըր պէկ փողոց թիւ 9 տունն՝ իբր պարզ աւանդ Եէնի գաբուի եկղ. Թաղ. Խորհրդոյ տնօրէնութեանը կը յանձնուէր:

24. 1885 Ապ. 3 Իբրատիկ Անդրէասեանի 1885 Մարտ 12 թուականաւ պայմանագիրն, որով ի Սամաթիա տուն մը ներքեւի կրպակով Եէնի գաբուի Թաղ. Խորհրդոյն տնօրէնութեանը կը յանձնուէր, իբր պարզ աւանդ, և ինչ ինչ պայմաններով:

## 3. ԿՏԱԿԱՅԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Բացի այն կտակագրերէն եւ պայմանագրերէն, Տնտես. Խորհուրդը զբաղեցաւ նաեւ հետեւեալ կտակային խնդիրներով:

1. Հոգելոյս Անդրէաս Եպիսկոպոս իւր մահուան մօտ հարիւր Թուղթ րուպլի իւր եղբօրն կտակած, եւ Փրինչէվլէն այն գումարն ի Պատրիարքարան յուղարկուած լինելով Տնտես. Խորհուրդը յանձնեց զայն կտակընկալ անձին օրինաւորութեան սահմանին մէջ:

2. Հանգուցեալ Անդրէաս Եպիսկոպոս իւր կենդանութեան՝ յատուկ կտակագրով մը Իւսկ. Ս. Խաչ Եկեղեցւոյ կը նուիրէ, ի նոյն Թաղ Չիլինկար պաղչէ իւր սեփականութիւնն եղած կէս փայտաշէն տուն մը, եւ Նախորդ Տնտես. Խորհուրդն Էջմիածնայ Սինոդէն հասած յիշեալ կտակագրին օրինակը հաղորդելով Ս. Խաչ Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյն, անոր գործադրութիւնը կը յանձնարարէ. սակայն Թաղ. Խորհուրդը չը յաջողիր գործադրել կտակը՝ առնելով մէկ կողմէ որ յիշեալ տան բաժանակից հանգուցելոյն քոյրը դժուարութիւններ կը յարուցանէ առէպ, եւ միւս կողմէ՝ նոյն տան աւանդապահին մահուան առթիւ խել մը որդեգիներ յառաջ գալու հաւանականութիւններ կան, եւ յայտնելով որ կտակեալ կէս տունն 3000 ղրշ.էն աւելի չարժեր, եւ սոյն դժուարութեանց առաջքն առնլոյ, ինչպէս նաեւ Ճէրաղի, Ինթիգալի և այլ ծախուց առթիւ վճարելի գումարը գրեթէ պիտի հաւասարի տան արժէքին կառաջարկէ՝ կտակեալ տան Ճէրաղի գործողութեան ծախուց համար կտակարար Սրբազանի ժամանակին Եկեղեցւոյ սնտուկին յանձնուած 1857 ղրշ.ի գումարն՝ իբր արժէք տան՝ ծառայեցնել կտակին գործողութեան, իսկ տունը թողուլ հանգուցելոյն քրոջ, որ իւր սեփականութիւնը կը համարէ և հոն կը բնակի, առանց երբէք յանձն առնելու վարձք վճարել:

Տնտես. Խորհուրդը կը հաւանի այն առաջարկութեան և կը յայտարարէ խնդիրն Խառն Ժողովոյ:

3. Փափազեան Գէորգ էֆէնտի ի կենդանութեան իւրում քառասուն հազար ղրշ. կը

կտակէ Գում-Գաբուի դրսի Նիկողեցւոյն, նոյն գումարով տեղւոյն Ազգ. վարժարանին ի նըպաստ՝ հաստատուն կալուած մը գնոյ տանելու պայմանաւ, և այն գումարին 10000 ղրշ.ը կը վճարէ կանխաւ. կտակարարը կը կնքէ իր մահկանացուն, Մնացեալ գումարին փոխարէն մուրհակ մը կ՚առնուի ժառանգորդներէն և անկէ Թաղական Խորհրդոյ և ժառանգորդաց միջև խնդիր կը ծագի, որ Տնտես. Խորհրդոյ ժառանգ կը մնայ իր նախորդէն՝ յոյժ ծանր կերպարանք մ՚առած ։

Տնտես. Խորհուրդը կը յաջողի կտակին կէս առ կէս գործադրութեան ընել՝ երկու կողմը սիրաշահելով, վճարել կուտայ ժառանգորդաց Մնացեալ գումարն և Նիկողեցւոյ սեպհական կալուածներէն կտակեալ գումարին համարժէք կալուած մը կը յատկացնէ վարժարանին՝ իբր կտակ՝ և այսպէս լուծումն կուտայ խնդրոյն, որու կը հաւանի Թաղ. ժողովն ։

4. Տնտես. Խորհուրդն իր նախորդին խնդրոց շարքին մէջ տեսաւ կտակային խնդիր մը՝ Օր. Իգար Գարակէօզեան անուամբ ։ Ըստ արձանագրութեանց՝ Գում-Գաբուի դրսի Թաղ. Խորհուրդը խնդիր ըրած լինելով գիտնալ նոյն կտակին համեմատ Նիկողեցւոյ սընտուկին պատկանած գումարին քանակութիւնն՝ կտակին մէկ պատճէնը պահանջուած էր կտակարար Գարակէօզեան Գրիգոր էֆ.է ։

Տնտես. Խորհուրդը խնդրոյն վերջ տալու համար թէև կրկնեց իր նախորդին յանձնարարութիւնը, սակայն մինչև իր հրաժարութեան ժամը չկրցաւ ստանալ պահանջուած օրինակը ։

5. Գայիանէ Արաքէլեան անուամբ կտակի մը խնդիր ի վաղուց անտի Տնտես. Խորհըրդոյ՝ մեծ զբաղում պատճառած էր, և Խասգ. Ս. Կարապետի Թաղ. Խորհուրդն 1884ի Տնտեսական Տեսչութեան մէկ տեղեկագրին փոփոխականութիւն ընծայելով կտակային պահանջք մ՚ի վեր հանած էր ։

Սինեքերիմ Գալֆայի հողակից Տիկին Գայիանէ Արաքէլեան ի կենդանութեան իւրում 1868 Դեկտ. 28 թուականաւ կտակագրով մը՝ իւր գոյից հետ՝ նաև կանխաւ Ազգ. Հիւանդանոցին կտակած 50000 ղրշ.ի տոկոսեաց, որ մինչև 1868 յուլիս 5.28700 ղրշ.ի յանգած էր. % 40ը կտակած ըլլալով Ս. Կարապետ Նիկեղեցւոյ Թաղ. սնտուկին և % 60ը Խալիֆ Խաչան Գէորգի երկու զաւակաց, Սուրբ Կարապետի Թաղական Խորհուրդն Ազգ. սնտուկէն ունեցած այն կտակային պահանջքը ձեռք բերելու նպատակաւ, իւր առ նեղը. Սնտուկին ունեցած քանչէլէրի տրոյ հաշիւն կը դժկամակէր կարգադրել ։

1881ի Տնտես. Խորհրդոյ միջոցաւ կատարուած քննութիւնք թէև հաստատած էին կտակին և հետևաբար յիշեալ տոկոսի պարտուց գոյութիւնն, և ըստ յիշեալ տեղեկագրի այն խնդիրն իր լուծումն ստացած էր, սակայն Թաղ. ժողովը վերադարձուցած էր զայն նախորդ Տնտես. Խորհրդոյ՝ ինչ ինչ դիտողութեամբ ։

Թէպէտ և Թաղ. ժողովոյ դիտողութեանց պատասխաններն գրեթէ ամփոփուած էին ի նոյն տեղեկագրի, սակայն Թաղ. ժողովոյ յանձնարարութեան վրայ հարկ եղաւ քննութեան մտնել, և Տնտես. Խորհուրդը յետ վերաքննութեան հաստատեց 1881ի Տնտես. Խորհրդոյ տեղեկագրին ճշմարտութիւնն, և անոր գործադրութեան մասին Թաղ. ժողովոյ հաւանութիւնը խնդրեց ։

6. Կար նաև Գուրտեան կտակային խնդիր մ՚ուշադրութեան արժանի ։

Տնտես. Խորհուրդը նկատելով որ, կտակարար և կտակընկալ Սուրբ Կարապետ Նիկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ միջև ծագած անհամաձայնութեան մը պատճառաւ՝ նախորդ Տնտես. Խորհրդոյ օրով կառավարութեան առեանը եկած է այն խնդիրն, թէ ուղղակի և թէ անուղղակի միջոցներ ձեռք առաւ խնդիրն վե-

ընտրին Ազգ. Իշխանութեան անօրէնութեանը յանձնուելու մասին ։

7. Գուրուչեշմէին Օր. Թագուհի Աղաբամաճեան փափաքելով իւր մօրենական սեպհականութիւնն եղող Միջագիւղ մէկ տունը Գուրուչեշմէի Եկեղեցւոյ նուիրել, դժուարութիւններ երևան կուգան և Միջագիւղի Թաղ. Խորհուրդը՝ նոյն տունն իբր իւր կտակեալ սեպհականութիւնն՝ այսպիսի նորագոյն կտակներու հարկ չտեսնիր ։

Տնտես. Խորհուրդն իւր Ատենապետին միջոցաւ տեղական քննութեան ձեռնարկած լինելով՝ Միջագիւղի Թաղ. Խորհրդոյ հրաժարման և ընտրութեան պատճառներով տակաւին խնդիրը որոշման մը յանգած չէ ։

8. Տիկին Բուրուլ Նըլըըրզեան՝ ի յիշատակ հոգւոյ եղբօրորդւոյ իւրոյ՝ 1871 թուականին 200 հատ Օսմ. բօնսօլիտէ կը նուիրէ Գուրուչեշմէի Սուրբ Խաչ Եկեղեցւոյ, պայման դնելով որ, տարեկան 11 ոսկի տոկոսը նոյն գիւղի Եկեղեցւոյն և վարժարանին վճարուի կէս առ կէս, և փոխարէն տարին մի անգամ Ս. Պատարագ մատուցուի վախճանելոյն հոգւոյն համար ։

Այլ սակայն բաւական տարիներէ ի վեր տեղւոյն Թաղ. Խորհուրդը խնդիր կընէր ստէպ այս մասին, յայտնելով որ, ոչ քօնսօլիտէներն իւր տրամադրութեան ներքև կը գտնուին և ոչ ալ կտակեալ տոկոսը կ'առանոյ, և հետևաբար կտակը մասամբ գործադրութեան մէջ է՝ չարունակմամբ Ս. Պատարագի մատուցման, վասն հոգւոյ հանգուցելոյն ։

Տնտես. Խորհուրդն թէև երկիցս խնդրեց կտակարար Տիկինէն որ կտակին կէս առ կէս գործադրութեան մէջ դնէ՝ հարկ եղած կարգադրութիւններն ընելով, սակայն դեռ պատասխան մը չկրցաւ առնուլ ։

9. Մայր Եկեղեցւոյ Թաղական Խորհուրդը Նազըճեան ընտանեաց կողմէ եղած կտակի մը բարեփոխութիւնը կը խնդրէ ։

Տնտես. Խորհուրդը խնդրարկու Թաղ. Խորհրդոյն և կտակընկալ հաստատութեանց բացատրութիւնները լսելով՝ կատարած քննութեան արդիւնքն իւր որոշմամբը ներկայեց Խառն Ժողովոյ, որոյ ձեռնհասութեանը կը պատկանէր խնդիրը ։

Աւելորդ է ըսել թէ, Խառն Ժողովն իւր մէջէն և Տնտես. Խորհրդէն Խառն Մասնաժողով մը կազմած է, խնդիրն վերաքննելու և առ Խառն Ժողովն տեղեկագիր մը մատուցանելու պաշտօնով ։

10. Մարիամ Գրիգոր Ֆինճանճեան անուն կին մը թէ ի Պատրիարքարան և թէ Բ. Դրան դիմելով՝ կը պնդէր որ հանգուցեալ Զաքարիա վարդապետ Չիմրիթճեան՝ ինչ որ ունէր՝ իւր կենդանութեանը իրեն կտակած էր ։

Խնդիրը մշօրէն նկատողութեան առնուելով կատարուած հարցաքննութիւնք հաստատեցին թէ, հանգուցեալը բնաւին կտակ մը չունի ըրած, և Ֆինճանճեան տիկնոջ ըրած պահանջումն անտեղի է և անիրաւ, նոյն իսկ իւր կողմէ ցոյց տրուած 20ի չափ վկայից հարցաքննութեան և խոստովանութեանը համեմատ ։

11. Էջմիածնոյ Սինօդը կը ծանուցանէր որ, Բալուցի Մ. Աստուածատուր Մեսրոպեան 1875 թուականին կրպակ մը կտակած է Ս. Էջմիածնոյ, և նոյն թուականէն ի վեր բնաւին վարձք մ'ընդունած չէ, ուստի կը յանձնարարէր կտակեալ կրպակին վարձուց առուցման մասին անօրէնութիւն մ'ընել ։

Թէ՛ ուր կը գտնուէր այս կրպակն և ո՞վ էր արդի վարձակալը, Սինօդը բացատրած չլինելով՝ Տնտես. Խորհուրդը թէև քննութիւն մը բացաւ, բայց ժամանակ չունեցաւ վախճան տալու խնդրոյն ։

12. Սերովբեան Յակոբ Արրաքեան ժամանակաւ 40 հազար ղրշ. յանձնելով Ս. Երուսաղէմայ Վանուց տնտեսին՝ նոյն գումարին պահանջատէր կը կարգէ Իւսկ. Ս. Խաչ Եկեղեցւոյ տնտեսն, կտակելով որ անոր տոկոսներն ամեն ամիս անվրէպ վճարուին իւր երկու քեռորդւոց, քանի որ կենդանի մնան ։ Ըստ այսմ Սելամիյ Թաղ. Խորհուրդը բաւական ժամանակ շարունակելով տոկոսաց վճարումն ի վերջէ կը դադրեցնէ, առարկելով որ կտակի գոյութիւն մը չտեսնէր, և հետևաբար բողոքանաց տեղի կուտայ ։

Տնտես. Խորհուրդն այս խնդրով բաւական զբաղելէ յետոյ՝ անտեղի կը գտնէ Թաղ. Խորհրդոյ առարկութիւններն և հրահանգ կուտայ որ, ըստ օրինակի իւր նախորդաց, յարգէ կտակն և շարունակէ վճարել տոկոսի ամսականները ։

13. Ֆէրիգիւղցի Փափազեան Գրիգոր անուն ազգային մը՝ իւր սեպհականութիւնն եղող Ֆէրիգիւղ տուն մը, պարտէզ, և Բերա հաղինօ մը, ընդ ամենն 800 ոսկւոյ արժողութեամբ 1881 թուականին կը կտակէ Ֆէրի գիւղի Եկեղեցիին, փէրաղի՝ կալուածական տրոց և այլ ծախուց համար 1 % տոկոսով 150 ոսկւոյ փոխառութիւն մ'ընելով նոյն Եկեղ. տնտեսէն, և սոյն գումարին տոկոսը ժամանակ մը վճարելէ յետոյ՝ կալուածական վարձուց նուազման պատճառաւ շարունակելու անկարող կը գտնուի ։

Սոյն խնդիրը տեղւոյն Թաղ. Խորհրդոյն և կտակարար Փափազեանի միջև ծանր վէճի նիւթ լինելէ յետոյ՝ Թաղ. Խորհրդոյ կողմէ Տնտես. Խորհրդոյ կը ներկայանայ, այս վերջինն առաջարկելով որ կտակն եղծուի և փոխառութեան գումարը տոկոսներով հանդերձ, որ 181 ոսկւոյ յանգած էր, վճարուի իրեն ։

Տնտես. Խորհուրդն այս վիճակին մէջ ուշադրութեան առնլով խնդիրը՝ թէև կը փափաքի այդ կտակն մի ուրիշ Եկեղեցւոյ փոխանցել տալ, սակայն չկրնալով համոզել կտակարարն՝ կը պարտաւորի խնդիրը յայտագրել Քաղ. Ժողովոյ, որու հաւանութեամբ կը ջնջէ կտակագիրն՝ ամենապահական տրոց և փոխառութեան գումարին փոխարէն 240 ոսկւոյ գումար մ'ստանալով Գ. Փափազեանէ, և կարտօնէ կտակեալ կալուածոց վաճառումն ։

Այս գրամն ընդ հսկողութեամբ Տնտես. Խորհրդոյ այժմ տոկոսի յանձնուած է, և ամսէ ամիս տոկոսը կը վճարուի Ֆէրիգիւղի Եկեղ. տնտեսին, և սոյն անօրէնութիւնը պիտի շարունակուի, մինչև որ յանուն Ֆէրիգիւղի Եկեղեցւոյն շահաւէտ կալուած մը գնոյ առնուլ ձեռնարկուի ։

14. Կեսարացի Սիմա անուն կին մը՝ վիճակին Գաւառ. վարչութեան կողմէ վաւերացեալ 1883 Օգոս. 19 թուականաւ մի վկայագիր ի ձեռին՝ նախ ի Պատրիարքարան և ապա Բ. Դրան դիմելով, ըստ կտակագրի հօգելոյս Շահնազարեան Կարապետ վարդապետի՝ մօրն Եղիսաբէթի և մօրեղբօրն Սարգսի կտակեալ 100 ոսկւոյ գումար մը կը պահանջէր ։

Տնտես. Խորհուրդը վախճանելոյն ինքնագիր կտակէն, որ ի պահ կը մնայ Պատրիարքարանի աւանդից արկղն, ստուգեց որ, յիշեալ կտակեալ գումարն ոչ թէ Եղիսաբէթի և Սարգսի, այլ կտակարարին քեռորդի Մըկրտչի կը պատկանի՝ և թէ ժամանակին, յետ մահուան բարեյիշատակ կտակարարին՝ Էջմիածնայ Սինոդի ձեռամբ նոյն գումարն յանձնուելով Մկրտչի և ընկալագիր մը առնելով ի Պատրիարքարան յուղարկուած է, ուստի անիրաւ գտաւ կնոջ պահանջումն և իւր քննութեան արդիւնքն յայտագրեց Քաղ. Ժողովոյ, ըստ այնմ պատասխանելու համար Բ. Դրան ։

15. Երզնկացի Եղիաեան Յովակիմ անուն ազգային մը 1880 թուականին Պօլսոյ Էթմէյտանի վարժարանին կտակած էր, ի նոյն թաղ

Փէշտիմալճի խանին մէջ ունեցած սենեակը պայմանաւ որ, քանի որ կենդանի մնան ինքն և մայրը Տիկին Գալուստեան, իրաւունք ունենան նոյն սենեկին վարձքերն առնելու ։

Կտակարարն իւր հայրենիքը մեկնելէն վերի, Երզնկայի Տնտես. Խորհուրդը կը յայտարարէ որ Յովակիմ աղա իւր մահկանացուն կնքած է և մայրը Գալուստեան բողոք կը բառնայ կտակեալ վարձքերուն 2 տարիէ հետէ չվճարուելուն համար ։ Տնտես. Խորհուրդը հետազօտելով խնդիրը կը տեղեկանայ որ, Տիմ․տէլէկեան Գրիգոր անուն Երզնկացի ազգային մը կը մատակարարէ նոյն սենեակին, ուստի հարցաքննութեան կենթարկէ զայն, որ դեռ ընդ քննութեամբ կը գտնուի, մինչ կուգէ բողոքոյ Թաւուկանէն՝ 1884 Սեպտ. 1էն սկսեալ՝ յիշեալ սենեակին իւր անմիջական հսկողութեանը տակ կառնու, և վարձակալին հետ պայմանագիր մը կնքելով կը շահէ կտակին գործադրութիւնը։

16. Թօփգաբուի Թաղական Խորհուրդը տասն և աւելի տարիներէ ի վեր չէր դադրած բողոքելէ՝ Պէզճեան Յարութիւն և Ճանիկ բարեյիշատակ ամիրաներու մէկ կտակն Գալաթու Թաղական Խորհրդոյ կողմէ անգործադրելի, և հետևաբար կտակեալ տոկոսէն իւր վարժարանին բաժնին ինկած մասն անվճար մնալուն համար, և Տնտես. Խորհուրդներն չէին կրցած վերջ տալ սոյն խնդրոյն, երբեմն Գալաթու Թաղ. Խորհուրդն անկանոն վիճակի մէջ գտնուելուն և երբեմն գտնուող Թաղ. Խորհրդոց փոխուած ալլուն պատճառաւ ։

Բարեյիշատակ Ամիրայք 40000 դրուշ յանձնած են Գալաթու Ս. Լուսաւորչեան Եկեղեցւոյ անտուկին կտակ քնելով որ, անոր արտադրած 400 դրուշ ամսական տոկոսին 266 3/4 ղրշը Գարակէօզրիւկի և Սալմաթօմրուկի և մնացեալ 133 1/4 ղրուշը Թօփգաբուի ազգային վարժարանաց միթէվէլլիներուն վճարուի ամեն ամիս, այլ սակայն Գալաթու Թաղական Խորհուրդը չուրջ 16 տարիներ այդ տոկոսն անվճար թողած լինելով Գարակէօզրիւկի Եկեղեցւոյ անտուկին իբր 60000 դրուշ և Թօփգաբուի՝ իբր 30000 դրուշ պահանջքը գոյացած էր կտակեալ տոկոսեաց հաշուէն ։

Տնտես. Խորհուրդը յետ մանրախոյզ քննութեան՝ Գալաթու Թաղ. Խորհրդոյ յառաջ բերած ամեն առարկութիւններն անընդունելի գտաւ և զուրկ օրինաւորութենէ, և նկատելով որ Գալաթու Ս. Լուսաւորչեան Եկեղեցւոյ անտուկն ընդունած է կտակեալ 40 հազար դրուշն, և հասութից բաւական աղբիւրներ ունենալով և իւր հաստարակչութիւնն կորուսած չլինելով՝ նիւթական իսկ պատճառ մը չունի կտակին գործադրութիւնն առկախելու, և այսպիսի պատճառ մ'իսկ՝ եթէ երբէք ունենայ, չէ ներելի անգործադրելի թողուլ յիշեալ բարեպաշտական և նուիրական կտակի մը գործադրութիւնն . այսու հանդերձ նկատելով միանգամայն որ, Գալաթու Թաղ. Խորհուրդն անարդար վճարում մ'ընելու դատապարտուած է, այն է կտակեալ գումարին համար ամենէն բարձր տոկոսը վճարել շարունակաբար, քանակութիւն մը, զոր Տնտես. Խորհուրդն սկզբամբ մերժած է արդէն, որուն էր դիւրել տոկոսի ամսական կարգադրման խնդիրը թողուլ առաջայլին, և 9 % հաշուով տոկոսի արտադրած ամսականէն 200ը Գարակէօզրիւկի և 100ը Թօփգաբուի վարժարանաց բաշխել, և թէ սոյն որոշումը գործադրութեան դնել 1884 Յուլիս 1էն սկսեալ, և ըստ այսմ իւր յայտագիրը մատոյց Թաղ. Ժողովոյ ։

Այն որոշումը Թաղ. Ժողովը ընդունելէ և գործադրութիւնն հրամայելէ յետոյ՝ Տնտեսական Խորհուրդը տեսնելով որ, Գալաթու Թաղ. Խորհուրդն այս անգամ վճարման մասին դժուարութիւններ կը յարուցանէ, ուստի հաւանութեամբ Թաղ. Ժողովոյ կը հարկադրի առաջարկել կտակին գործադրութիւնն Գալաթու Եկեղեցւոյ սեփհական մէկ կալուածին միջոցաւ, և այս մասին հարկ եղած հրահանգը կը հաղորդէ Թօփգաբուի Թաղ. Խորհրդոյն, և նոյնը

կը ծանուցանէ նաև Կուսակալական Թաղ. Խորհրդոյ ։

17. Սեբաստացի Սարրաֆ Յարութիւն աղա 1852 Թուականին 20 հազար ղրուշ կը յանձնէ Կէտիկ փաշայի Եկեղեցւոյ անունին, կտակ ընելով որ յետ մահուան իւրոյ քէօէն 3 ղրուշին չափը՝ ձեռամբ նոյն Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյն՝ ամեն Ս. Զատկի տօնին վճարուի ըստ արձանագրութեան Եկեղեցւոյ՝ ազգային զանազան հաստատութեանց, յորոց գտնուելով Սեբաստիոյ Ս. Նշան վանքն և 2 Եկեղեցիներ և Թօփգաբուի Եկեղեցին, որք չէին դադրած բողոքելէ, առաջինն յայտարարելով որ 3 տարիներ միայն վճարուած է կտակեալ տոկոսն, և երկրորդը կտակին Թուականէն ի վեր անվճար մնալը ծանուցանելով ։

Պալատու նման՝ Կէտիկ-փաշայի Թաղ. Խորհուրդն ալ անգործադրելի թողած էր յիշեալ կտակին գրեթէ միևնոյն տարակութիւններով, և իւր ամեն փաստերն և պարագայութիւններն պաշտօնապէս ջրուելէ յետոյ՝ ուր ուրեմն ճարահատ կը յայտարարէ թէ, կտակ ըսուածը կոնդակ մ'է, և չկրնար իբրև կտակ նկատել զայն ։

Տնտես. Խորհուրդը՝ կրկին և կրկին բննութեամբ հաստատուած և վճռուած կտակի մը գործադրութեան դէմ Թաղ. Խորհրդոյ աններելի վարմանց առջև նկատելով որ, առանց ազդու միջոցներու կարելի չպիտի լինի հանգուցեալ կտակարարին կամքն յարգել տալ, Քաղ. ժողովոյ տնօրէնութեանը կը յանձնէ խնդիրն, որ պէտք եղած ազդարարութիւնը կուղղէ Կէտիկ-փաշայի Թաղ. Խորհրդոյն, հրաւիրելով զայն 30 օրեայ պայմանաժամու մէջ, դնել կտակին ի գործադրութիւն ։ Սոյն պայմանաժամըն շատ իսկ անցած լինելով՝ կսպասուի որ Կէտիկ-փաշայի Թաղ. Խորհուրդը ճանաչէ առ Կեդր. Վարչութիւնն ունեցած ստորադասութիւնքն և, յարգէ կտակարարին նուիրական և անքանակարելի կամքն ։

## ՆՈՒԷՐՆԵՐ ԵՒ ՆՊԱՍՏՆԵՐ

Մշեցի Սարգիս Յարութիւն անուն բարեպաշտ ազգային մը՝ Զմիւռնիոյ մէջ զանազան հաստատութեանց կտակներ կընէ ։ յորոց կը գտնուի նաև Կեդր. Սնտուկն ։ Յետ մահուան Սարգիս աղայի, եղբայրն կտակագրին մի վաւերացեալ օրինակը ներկայացնելով Տնտեսական Խորհրդոյ՝ անոր համեմատ հանգուցելոյն կեդր. Սնտուկին նուիրած 3 ոսկին կը յանձնէ ։

Տնտես. Խորհուրդը շնորհակալութեամբ ընդունած է սոյն նուէրն ։

Գուզկունճուք և Իճատիկ միացեալ Թաղի բնակիչներէն Համամճի պաշի Սարգիս աղա Սուքիասեան՝ իւր սեպհականութիւնն եղող Զուքուր-Չէշմէ խան վերի յարկ թիւ 23 սենեակը նուիրեց Հիւանդանոցի Ազգ. հաստատութեան, յետ մահուան իւրոյ Ս. Սարգսի տօնի օրն ի մատրան Փրկչի Ս. Պատարագ մատուցանելու միակ պայմանաւ ։

Տնտես. Խորհուրդը գոհունակութեամբ արձանագրեց սոյն նուիրատուութիւնն ։

Չէյթունի հրկիզելոց ի նպաստ Բաքուի ազգայիններէն ասկէ առաջ 54 թուղթ ռուսական ռուբլի և ի վերջէ Հարէնց Գաբրիէլ էֆ. և ընկ. ձեռօք 200 ոսկի հասած լինելով, Տնտես. Խորհուրդն սոյն գումարներն Ձեր Բարձր Սրբազնութեան կնքոյն ներքև ի պահ դրաւ աւանդից արկղն, պահպանելու համար, մինչև որ ըստ իւր նպատակին՝ բաշխման մասին ձեռք առնուած տնօրէնութիւններն գործադրուին ։

Նոյն տարի, Ռուսաստանէն Մեծ. աղա Յովսէփ Իզմիրլեանցի մէկ կտակին համեմատ աղա Կարապետ Եզեանցի կողմէ 20000 ռուբ. լի 2 կտոր Ռուս. Պետութեան պարտատոմսերն յուղարկուած լինելով՝ Տնտես. Խորհուրդն ստոյգ զանոնք Ռուսիոյ Դեսպանատունէն, և յանձնեց Ձեր Սրբազնութեան՝ կտակին գործադրութեան համար կազմեալ Յանձնաժողո-

մին հետ բանակցութեամբ զայժմանն ի գործ դնելու համար ։

Տնտես. Խորհուրդը կտակաց Հոգաբարձութեան պաշտօնին վերաբերեալ գործոց մասին՝ իւր տնօրէնութեանց համարատուութեանն առթիւ պարտ կը համարի յայտնել որ, հին կտակագրոց ամփոփման և արձանագրութեան գործը յատուկ խնամոց կը կարօտի, վասն զի կտակագրերն 1880 թուականէն ի վեր Տնտես Խորհրդոյ միջոցաւ կանոնաւոր արձանագրութեան ներքև կը գտնուին, և ամփոփեալ կը մնան, իսկ անկէ առաջ եղած արձանագրութիւնները ժամանակ ժամանակ ընդհատուած լինելով՝ ամենակարևոր է որ հին կտակներն ամփոփուին և արձանագրութիւնք կատարելագործուին ։



# ՄԻՋԱԴԷՊ

Տնտես. Խորհուրդն ելմտական մասին չանցած՝ կուզէ մի քանի խօսք ընել իր պաշտօնավարութեան վերջի քանի մը ամիսներուն մէջ տեղի գտած միջադէպի մը վրայ, որ ո՛չ միայն իր ժամերը գրաւեց և կարի արգել եղաւ իր գործառնութեանց, այլ և յոյժ ծանր կերպարանք մ'առաւ, և ընդ. Քաղ. Ժողովոյ երկար բանակցութեանց տեղի տուաւ ։

Տնտես. Խորհրդոյ անդամներէն Սարրաֆեան Միքայէլ էֆէնտի՝ քանի մ'ամիսներ առաջ յանակընկալս իր անդամակցաց միոյն ապօրէն արարմանց դէմ բողոքելով «ապագայ պատասխանատուութենէ» ազատ մնալու մտքին պատճառաբանութեամբ կը հրաժարի ։ Քաղ. Ժողովն այդ պատճառաբանութիւն քննելու պաշտօնով կը կարգէ մի Քննիչ Յանձնախումբ, առանց մի անգամ Տընտես. Խորհրդոյ կարծիքը կամ բացատրութիւնը լսելու՝ ինչպէս որ օրէն էր։

Յայտնի է թէ, այս տեսակ պարագայից մէջ հարկ էր նախ յղել խնդիրը Տնտես. Խորհրդոյ ի քննութիւն, և միւս անդամակցաց կարծիքն կամ բացատրութիւնը լսելէ ետև՝ եթէ հարկ տեսնուէր՝ այն ատեն Քննիչ Յանձնախումբ մը կըրկար գրաւիլ։

Հակառակ այս օրինաւոր դիտողութեան, Յանձնախումբը կը ձեռնարկէ իր պաշտօնին, որոյ կատարած քննութեան միջոցին կը պարզուի թէ՝ Սարրաֆեան էֆ.ի պատճառաբանութիւնները Զօպանեան էֆ.ի գործառնութեանց կը վերաբերէին, և ըստ բերանացի բացատրութեանց հրաժարելոյն՝ այս վերջինն էր ամբաստանեալը ։

Տնտես. Խորհուրդն աւելորդ կը համարի այս առթիւ իր և Քաղ. Ժողովոյ մէջ տեղի ունեցած թղթակցութեանց մանրամասնութեանց վրայ խօսիլ ։

Զօպանեան էֆէնտի մէկ կողմէ գրաւորապէս քննութիւն կը պահանջէ Տնտես. Խորհրդէն, միւս կողմէ լսած լինելով որ, Սարրաֆեան էֆէնտի հասարակաց վայրեր, և մինչև իսկ Քաղ. Ժողովոյ անդամոց յայտարարած է թէ, նենգութիւնք և խարդախութիւնք տեղի ունեցած են և թէ կարող է ապացուցանել զայնս, կը բողոքէ յատենի Քաղ. Ժողովոյ ընդդէմ Սարրաֆեան էֆէնտիի, և կը պահանջէ գրաւորապէս ստանալ անկէ իր յարուցած ամբաստանութիւնները կէտ առ կէտ, յետոյ օրինաւոր կերպիւ դատաստան ընելով պատժել զինքն, եթէ յանցաւոր է, կամ Սարրաֆեան էֆէնտի՝ եթէ զրպարտիչ է. Իսկ Սարրաֆեան էֆ յատենի Քաղ. Ժողովոյ կը յայտարարէ թէ՝ իրօք կան խարդախութիւնք և նենգութիւնք և ինք կրնայ ապացուցանել ։

Քաղ. Ժողովն ուր ուրեմն այս արդար պահանջման առջև կ'որոշէ դատել խնդիրն իր ատենին մէջ և իր 10 Ապրիլ 1885 նստին կը յանձնարարէ Սարրաֆեան էֆէնտիի մինչև ութ օր գրաւորապէս մատուցանել իր ամբաստանութեան կէտերն մի առ մի ։

# ՄԱՍՆ ՉՈՐՐՈՐԴ

## ԵԼՄՏԱԿԱՆ

Տնտեսական Խորհուրդը պաշտօնի ձեռնարկած միջոցին ելմտական ճիւղը յոյժ անձուկ վիճակի մէջ գտաւ․ զանազան անձանց 89580 ղրշ. Ս. Պատրիարք Հօր 84393 ½ ղրշ. և Պաշտօնէութեան Թոշակաց 26941 ղրշ. պարտք մը դիզեր էր, և պարտապահանջք գրեթէ ամենքն ալ Թախանձանօք իրենց առնելիքը կը խնդրէին ։ Մուտից ճիւղերը ցամքած և հասոյթք նուազած էին, և այս արդիւնք էր գլխաւորաբար Կ. Պոլսոյ նեղ վիճակին ։

Տնտես. Խորհուրդն՝ ըստ որում երջանկայիշատակ Տ. Ներսէս Ս. Պատրիարք Հօր քաջալերիչ խօսքերէն խրախուսեալ ձեռնարկած էր ի գործ, ուստի օրինաւոր տնտեսութեան սկզբունքն իրեն առաջնորդ բռնելով՝ ջանաց կատարելապէս բարւոքում մը ձեռք բերել և այնպիսի ուղղութիւն մը տալ Կեդր. սնտուկի ելևմտից ընթացքին, որով կարելի լինէր Պատրիարքարանի ծախքերն անխափան և կանոնաւորապէս մատակարարել, և բառնալ դըրամական ձգնաժամն հետևած այն ելմտական դժուարութիւններն, որք սկսած էին վարչական անօրէնութեանց արգել լինել ։

Այս փափաքելի վիճակը ձեռք բերելու, և այն պարտուց գումարն՝ որ ծանրացած էր Կեդր. սնտուկին վրայ, ժամ յառաջ բառնալու համար Տնտես. Խորհուրդն ամեն բանէ առաջ զգոյշ ելևմտացոյցի մը պատրաստութեան ալ հոգն, և ժամանակին պահանջմանց համեմատ կարելի եղած խնայողութիւններն ի գործ դնելով՝ չափից ու ծախուց մէն մի ճիւղերը հետաքննելով և հիմ բռնելով անցեալ տարւոյ մէջ եղած ծախքերն և հասոյթները, պատրաստեց զայն, և 1884 Մարտ 21ին մատոյց Քաղ. Ժողովոյ հետևեալ տեղեկագրով ։ (*)

### Ամենապատիւ Սրբազան Պատրիարք Հայր Նախագահ Ազգային Քաղաքական Ժողովոյ.

Տնտես. Խորհուրդն իւր Սահմանադրական պարտաւորութեանը համեմատ կը փութայ աւասիկ Կեդր. սընտուկի յառաջիկայ 1884-1885 տարւոյ Ելմտացոյցն հաղորդել Պատկառելի Ժողովոյդ, և կը խնդրէ որ ստիպողութիւն ընծայուելով անոր, մատուցուի փութով Ազգային Ժողովոյ որոշման, որպէս զի դէթ Սահմանադրական տարւոյն սկիզբներն իւր վաւերացումն ընդունելով վերադարձուի Վարչութեան ։

Ինչպէս Ելմտացոյցէն կը յայտնուի, յառաջիկայ տարւոյն համար նշանակեալ է 393,000 ղուրուշ հասոյթ և 303 000 ծախք, այս հաշուով թէև հասութից առաւելութիւն մը կը գոյանայ, բայց Տնտես. Խորհուրդն Ազգային ուղղակի պարտուց, և մուգաթայի և քանչէլէրի աղբիւրներէն 90 000 դահեկանի գումար մը դժուարագանձելի նկատելով՝ զգու-

(*) 1883-84 տարւոյ հաշուեցոյցն եւ 1884-85 եւ 85-86 տարիներու ելմտացոյցերն Ազգային Ժողովոյ մատուցուած եւ տպագրուած լինելով՝ աւելորդ դատուեցաւ արտատպել ի տեղեկագրիս ։

չութեամբ՝ անցուցած է զայն Ելմտացոյցին մէջ, ինչպէս որ մանաւոր կերպով բացատրուած է, և երբ ջանք և անդուլ հետամտութիւն չպակսին և յաջողի Կեդր. Սնտուկին յիշեալ երեք ճիւղերու հասոյթներն ամբողջապէս գանձել նշանակեալ քանակութեամբ, այդ յաւելեալ շահուն կէսը պիտի յատկանայ հին պարտուց, և կէսը Վարչական երկու պիտոյից, այն է դաստիարակութեան և գաւառական այցելութեան ծախուց։ Իսկ ծախքերն ենթադրուած են այն քանակութեամբ, որով արդէն կը մատակարարուին Պատրիարքարանի պէտքերը։ Միայն թէ, աւելորդ չէ ըսել որ ծախուց մի քանի ճիւղերուն, գլխաւորաբար պաշտօնէութեան Թոշակի ճիւղին մէջ խնայողութիւն մը ի գործ դրուած է անցելոյն համեմատութեամբ, խնայողութիւն, որ Կեդրոնական Սնտուկին նեղ վիճակին արդիւնքն է, և որ արդէն նոյն իսկ ամսոյս սկիզբէն գործադրութեան դրուած է, հաւանութեամբ Պատկառելի Ժողովոյդ։

Սոյն Ելմտացոյցին պատրաստութեան միջոցին Տնտես. Խորհրդոյ կէտ նպատակին եղած է ելևմտից հաւասարակշռութիւնը պահպանել, և արդի դրամական միջոցներուն ներած չափով յանձանձել Վարչական ծախքերն, և կը յուսայ որ Կեդր. Սնտուկը սոյն Ելմտացոյցով առանց նոր պարտք մը թողլու պիտի բոլորէ յառաջիկայ նոր տարին։

Մնամք յարգանօք
Ի դիմաց Տնտես. Խորհրդոյ

Վ. Առնեղալի Վ. Առնեայեան
Մ. Զօրաճեան Յ. Եսմէճեան

21 Մարտ 1884

Առդ՝ յանձնելով անցեալ շրջանի Սահմանադրական տարեգլուխը՝ Տնտես. Խորհուրդը մատոյց նաև 1883-84 տարւոյ Կեդր. Սնտուկի մատակարարութեան հաշուեցոյցը, հետևեալ տեղեկագրով։

Ամենապատիւ Սրբազան Պատրիարք
Հայր Նախագահ Ազգ. Քաղ. Ժողովոյ

Ազգային Վարչութեան Տնտես. Խորհուրդն՝ իւր սահմանադրական պարտաւորութեան համաձայն՝ կը փութայ առաջիկ Կեդր. Սնտուկին նախորդ 1883-1884 տարւոյ Հաշուեցոյցը ներկայել Պատ. Ժողովոյդ, ինչպէս մատուցած է արդէն ներկայ տարւոյ Ելմտացոյցն։

Սոյն հաշուեցոյցին առաջին մասէն կը տեսնուի որ, 1882-83 Սահմանադրական տարւոյն վերջը, Կեդր. Սնտուկն ունեցած էր 363,702, 35 ղուրուշ պարտք և 1,407,437, 20 ղուրուշ պահանջք, որմէ 743,734, 35 ղուրուշի յաւելեալ շահ մը յառաջ կուգար. Իսկ նախընթաց 83—84 տարւոյ մէջ հասոյթ կերևի 471 640 87 1/2 ղրշ. և 434 797 37 1/2 ծախք, որով կը գոյանայ դարձեալ 36.843. 75 ղրշ, յաւելեալ շահ մը, որ բարդուելով նախորդ 82-83 տարւոյ յաւելեալ շահուց գումարին վրայ կը կազմէ 78578, 35 ղուրուշ։

Այլ սակայն էապէս Կեդր. Սնտուկին վիճակն տարբեր է ասկէ, ինչպէս ցոյց կուտայ հաշուեցոյցին գումարը, և փոխանակ նուազեալ տեսնուելու ներկայ տարւոյ պարտուց գումարն, աւելի ստուարացած և յանգած է 382 960 47 1/2 ղուրուշի, նոյն շրջանի հասոյթները և գլխաւորաբար մուգաթայ և քան-

չելէր անուն տուրքերն ամբողջովին չը կրնալ գանձուելուն պատճառաւ։

Տնտեսական Խորհուրդը Պատ. Ժողովոյ ուշադրութիւնը կը հրաւիրէ այս պարտուց վիճակին վրայ, վասն զի պարտուց գումարին 153 783 72 1/2 ղրշն կը բաղկանայ հին տարիներէ մնացորդ պարտքերէ, որք մեծ մասամբ անուանական են և ջնջելի, իսկ մնացեալ 229,176,75 ղրշը վճարելի պարտուց գումար մ'է, և այս գումարին 22,093 75 ղրշը անցեալ տարւոյ մէջ յաւելցած է, և եթէ կեդր. սնտուկին մուգաթայի 473,426 ղրշի պահանջքն՝ որոյ 385,776 ղրշն նախորդ տարիներէ և 87,650 ղրշն անցեալ տարւոյ մէջ գոյացեալ է, դէթ կիսովին գանձուէր, այս պարտքը գոյութիւն չպիտի ունենար։

Բաց 'ի սոյն պահանջքի գումարէն, քանչելէրի տրոց հաշուէն Մայրաքաղաքիս թաղերէն 56,047 1/2 ղրշի քանակութեամբ պահանջք մ'ալ կայ, որոյ 37,150 ղրշն հին տարիներու, և 15,497 1/2 ղրշն անցեալ տարւոյ մէջ գոյացեալ է։

Հաշուեցոյցին մէջ կը տեսնուի նաև 629,355 ղրշ. հին տարիներէ մնացորդ պահանջից ստուար գումար մը, որ ինչպէս նախորդ Տնտես. Խորհուրդներն դիտել տուած են բազմիցս, մեծ մասամբ փտուն են, և այսպէս պիտի լինի նաև վերոյնշանակեալ մուգաթայ և քանչելէր անուն տուրքերէն գոյացեալ մեծաքանակ պահանջքն, եթէ անոնց գանձմանը մասին զօրաւորագոյն միջոցներ 'ի գործ չ'դրուին։

Այս վիճակն էր ահաւասիկ, որ պարտաւորեց զԽորհուրդս կեդր. սնտուկի ներկայ տարւոյ Ելմտից մատակարարութեան մէջ խնայողութիւններ 'ի գործ դնել, և այս սկզբամբ պատրաստել Ելմտացոյցն, որ բնականաբար կը տարբերէր նախորդ տարիներուն համար պատրաստուած Ելմտացոյցներէն։

Ոչ նուազ կարևորութիւն տուած էր Ազգային ուղղակի տրոց խնդիրն ալ, որոյ նկատմամբ վերջին անգամ Երեսփոխանական Ժողովոյ կողմէ քուէարկեալ կանոնագիրը գործադրութեան դնելու և Ազգային տրոց հաւաքումն ընդարձակելու համար թէև անդրդուելի յարատևութեամբ ամեն ջանք 'ի գործ դրուած, Պատրիարքարանի կողմէ Թաղ. Խորհրդոց ամեն դիւրութիւն ընծայուած և կարևոր եղած հրահանգները հաղորդուած էին, սակայն Տնտես. Խորհուրդները չ'գտան թաղերէն այն օժանդակութիւնն, որու կարօտ էր տրոց կանոնագրին գործադրութիւնն, և քառամեայ երկար միջոցի մէջ հազիւ 6 թաղեր կրցան աւարտել իրենց աշխատութիւնները, և այն ալ այնպիսի բաշխման թերի ցուցակներ ներկայացնելով, ուր տրոց բաժիններն նախկին տրոց հետ բաղդատմամբ նուազագոյն քանակութեամբ և անհաւասար համեմատութեամբ սահմանուած էին 'ի վնաս կեդր. սնտուկին. իսկ մնացեալ Թաղական Խորհուրդներն և ոչ իսկ կրցին ձեռնարկել 'ի գործ, և այսպէս ոչ հին դրութեամբ տրոց հաւաքումը կրցաւ կատարուիլ և ոչ կանոնագիրը կարելի եղաւ գործադրութեան դնել, որով կեդր. սնտուկը զրկուեցաւ ներկայ տարւոյ հասոյթէն և սաստկացաւ իւր դրամական անձկութիւնը, վասըն զի 'ի հաշիւ անցեալ տարւոյ 5,048

ղրշի գումար մը միայն հաւաքուած էր Թաղերուն ձեռամբ ։

Հետեւաբար Տնտես. Խորհուրդս չէր կրնար աւելի գումար մը ենթադրել իւր Ելմտացոյցին մէջ, վասն զի խափանած էր գանձման եղանակն, և հաւանական գումար մը ենթադրելով՝ անցուց Ելմտացոյցին մէջ. միւս կողմէ՝ հաւանութեամբ Պատ. ժողովոյդ՝ դադրեցուց տրոց կանոնագրին գործադրութիւնն, և ըստ առաջնոյն սկսաւ շարունակել տրոց հաւաքումը ներկայ 1883-84 տարիէն եւս, ցնոր անօրէնութիւն, ինչպէս գանձուած էր արդէն տրոց կանոնագրին գործադրութեան թուականէն յետոյ երեք տարիներ ։

Խորհուրդս այս բացատրութիւնները տալով հարկ կը համարի առաջարկել նաև որ, յառաջիկայ տարւոյ մէջ եւս կեդր. տուրքը հին դրութեամբ գանձուելու արտօնութիւն շնորհուի, նկատելով որ հակառակ Ազգ. Վարչութեան ջանից և բազմաթիւ փորձերուն տակաւին ժամանակի մը համար կարելի չպիտի լինի տրոց կանոնագրի անթերի գործադրութիւնը տեսնել, և ինչպէս փորձով տեսնուեցաւ, մեծապէս վնասակար պիտի լինի զայն գործադրելու յուսով յառաջիկայ տարւոյ մէջ խափանել տըրոց գանձումն ըստ հին դրութեան, և նոյն կանոնագիրը գործադրութեան դընել առանց կարեւոր եղած բարեփոխումները սահմանելու, բարեփոխմունք, որոց նպատակը պիտի լինի կանոնագրին գործադրութիւնն և արդիւնքն ապահովել, և զորս սահմանելու համար թէև Թաղ. Խորհուրդները հրաւիրուած են յատուկ շրջաբերականաւ իրենց գիտողութիւններն և կարծիքը ներկայացնելու, սակայն դեռ պատասխանները չեն հասած, և հետեւաբար հարկ չէ ըսել թէ, յառաջիկայ տարիները բաւական չպիտի լինին լրացնելու համար գործն, և երբ տրոց հաւաքումը վերստին դադրի, կեդրոնական սնտուկին դրամական նեղութիւնն աւելի պիտի սաստկանայ ։

Մնամք որդիական յարգանօք

'ի դիմաց Տնտես. Խորհրդոյ

| | |
|---|---|
| Ատենադպիր | Փ. Ատենապետ |
| Մ. Զօպանեան | Յ. Եսմէնիճեան |

19 Յունիս 1884

Կ. Պոլիս

Տնտես. Խորհուրդը մէկ կողմէ իւր սոյն տարատուութիւններն ի գործ դնելով, միւս կողմէ՝ հասից և ծախուց գլխաւոր ճիւղերն արդիւնաւորելու մասին ջանք չխնայեց, և ամեն բանէ առաջ ուշադրութեան առաւ՝

1. Կեդր. ուղղակի տրոց վիճակը. — Որ հասից ճիւղին մէջ առաջին տեղը կը գրաւէ ։

Ինչպէս բացորոշ կերպիւ կը պատկերացնէ յիշեալ հաշուական տեղեկագիրը, սոյն տրոց վիճակն ուշադրութեան արժանի և անմիջական դարմանի կարօտ էր ։ Պատկառելի Ազգային ժողովոյ 1879 Հոկտ. 5 ԺԱռ. նիստին մէջ քուէարկուած Թաղային և Կեդրոնական միացեալ տրոց կանոնագրին գործադրութեանը կը ձեռնարկուի 1881 տարւոյ Օգոստոսին, և թէև հրահանգներ՝ բաշխման ցուցակներ և շրջաբերական գրեր կ'ուղարկուին 36 Թաղ. Խորհրդոց և շարունակ տրոց կանոնագրին անհրաժեշտապէս գործադրութիւնը կը յանձնարարուի, սակայն քառամեայ երկար միջոցի մէջ հազիւ՝

Խասգ. Նոր Թաղի
» Սելամիոյ
Գէօյիւքտէրէի
Նոր գիւղի
Էյ. Ս. Աստուածածնայ
Գատը գիւղի
Եէնի գափուի
Թօփ գափուի
Ֆէրի գիւղի

Թաղերը կարող կը լինին պատրաստել բաշխման ցուցակներն, և սոոնցմէ

Խասգ. Նոր Թաղի
» Սելամիոյ
Գէօյիւկսուէրէի
Նոր գիւղի
Եէնի գափուի
Թօփ գափուի

Թաղերն ալ 1883 Յուլիս ամսէն կ'սկսին ձեռնարկել հաւաքման ։

Յետոյ. Խորհուրդը յուսալով Թաղ. Խորհրդոց աջակցութենէն, նկատելով մանաւանդ որ, նախկին տրոց օրէնքն ալ փոփոխուելու երես բռնած է, և փորձերը ցոյց կ'ուտան որ ամէն նուազ պիտի արտադրէ ըստ Նոր Կանոնագրի այն տուրքէն ակնկալեալ արդիւնքն, և Թաղերու մէջ հաւաքեալ գումարները դժուարաւ պիտի ստացուին, ուստի Քաղ. Ժողովոյ հաւանութիւնն ստանալէ յետոյ՝ ինքն կ'ստանձնէ գլխովին տրոց հաւաքման գործն՝ ըստ հին դրութեան՝ և մէկ կողմէ կը գանձէ զայն, երաշխաւորեալ յատուկ հաւաքիչներու միջոցաւ և անձնական գործով ի Պատրիարքարան դիմող ազգայիններէն, իսկ միւս կողմէ՝ չդադրեցներ իւր աշխատութիւնները Նոր Կանոնագրին գործադրութիւնն ապահովելու մասին, և կը հրաւիրէ առհասարակ Թաղ. Խորհուրդները՝ յայտնել իրենց կարծիքն ու դիտողութիւններն այն բարեփոխմանց մասին, զորս իրենց փորձառութեամբն կարևոր կը համարին տրոց Կանոնագրին և անոր յարակից հրահանգաց գործադրութեան առջև իրենց լաւութեան տեղի տուող պատճառները բառնալու համար։

Թէպէտ և Թաղ. Խորհուրդներն այս պարագային մէջ ալ բոլորովին լռութիւն պահեցին, սակայն Յետոյ. Խորհուրդը կը կարծէ որ անոնց դիտողութիւնները կամ կարծիքը լսելու տեղի չէ մնացած այլ ևս, նոյնպէս տեղի չկայ նոյն Կանոնագրին գործադրութեան մասին նորանոր ճգանց և փորձերու, նկատելով որ անոր անգործադրելիութեան պատճառները քննելու պաշտօնով Ազգային Ժողովոյ կողմէ կարգուած Ելևմտական Յանձնաժողովը մանրակրկիտ դատելով Կեդր. ուղղակի տուրքը՝ Թաղերու տրոց հետ լծորդեալ հաւաքելու դրութիւնը, ծրագրած է մի նոր կանոնագիր, զոր Ազգային Ժողովը քուէարկելով 28 Յունիս 1885ի Դրս. նիստին մէջ՝ գործադրութիւնը հրամայած է։

Այլ սակայն որքան ալ դիւրամատչելի երևնային Կանոնագրեր ծրագրուին, մէկ որ կը գիտնալ որ անոր գործադրութիւնը հիմնեալ է մի միայն պարտուց և իրաւանց սկզբան վրայ, զորս առանց ի գործ դնելու չէ կարելի մշակել և արդիւնաւորել Կեդր. տուրքի այս գլխաւոր հասոյթն։ Բացատրութեան կարօտ չէ թէ, մեր ազգայնոց վիճակին և թուոյն հետ բաղդատմամբ խիստ աննշան է տարեկան մէջ գանձուած տրոց արդիւնքն, և որ ցաւալին է, այն խոկ ինքնաբերաբար չվճարեր Կեդր. տուրքին, այլ գործոյ աղաղաւ և հաւաքչաց միջոցաւ ամենամեծ դժուարութեամբ ձեռք կը բերուին։ Եւ՛ր իրաւանց և պարտուց ճանաչումն միանգամայն ի գործ դրուի, և վարչութեան ծախուց գէթ տարեկան տրոց մասնակցելու պարտականութիւնը յարգուի, Կեդր. տուրքը հետի կը մնայ խոլոս դրամական տագնապէ և վարչական խել մը բարենպաստ ձեռնարկութիւններ՝ որք այս պատճառաւ բարձ ի Թողի կը մնան տարւոյ տարի, արդիւնք կը գտնեն։ Այս պարտաճանաչութիւնն սակայն կ'առնուի մինչև իսկ ազգային ամեն ճիւղի պաշտօնէութեան կողմէ, որոց պարտաւորութիւն ըլլալ կը թուի՝ պաշտօնք

ըլլալ անցնելէ առաջ մաքրել նախ ազգային տուրքէն իրենց ունեցած պարտքն, յօրինուած ոյլոց :

Տնտես. Խորհուրդը մէկ կողմէ Կեդր. սնտուկի ծախուց վճարման մասին իւր պարտաւորութիւնքն ի գործ դրած ատեն, միւս կողմէ իրաւունք ունի յուսալու, և մինչև իսկ կը խնդրէ իրաւանց գործադրութիւնն ո՛չ միայն անհատներէ, այլ և Ազգային Երեսփոխաններէ և Ազգային Պաշտօնատարներէ, և առ այս հրաւէր կը կարդայ առ ամենայն ազգայինս, ինչպէս ըրաւ շատ անգամներ այդ հրաւէրն՝ ի լրագիրս պաշտօնական ծանուցմամբ և Սուրբ Եկեղեցեաց բեմերէն, Գեր. Քարոզիչ Հարց միջոցաւ յորդոր կարդացուելով, և կը մաղթէ որ իւր ջանքերն և խնդիրքն իւր օրով եթէ չկրցան պտղաբերիլ, որքան ակնունելի էր, գոնէ յառաջիկայ տարւոյ մէջ կարգինաւորին :

Այս առթիւ Տնտես. Խորհուրդը կ'առաջարկէ Ձեր Բարձր Սրբազնութեան որ, ամեն ընտրութեանց առթիւ թաղային ըլլայ թէ՛ երեսփոխանական, գաւառական կամ առաջնորդական, նախ նկատողութեան առնուին ընտրողաց և ընտրելեաց ցանկերն, և հետեւաբար Ազգային ուղղակի տուրքէ՛ քանչելներէ և մուզաթայէ Կեդր. սնտուկի պահանջքներն, և իրաւանց գործադրութիւնը պարտուց կատարման հետ զուգընթաց տնօրինուին և գործադրուին, ինչպէս կը հրամայէ Սահմանադրական օրէնքն և կը հռչակէ զայն բացարձակապէս :

2. Գաւառական մուզաքայի տուրք. — Կեդր. սնտուկի տումարները՝ Տնտես. Խորհրդոյ պաշտօնավարութեան սկիզբը $498{,}256\ {}^1/_2$ ղրշ. ի քանակութեամբ պահանջք մը ցոյց կուտային գաւառներէն և ցվերջ պաշտօնավարութեան Խորհրդոյս, այսինքն մինչև 1884-85 սոյն գումարը $531554\ {}^1/_2$ ղրշ. ի քանակութեան բարձրացած կը տեսնուի հետեւեալ մանրահաշուոյն համեմատ :

| | |
|---|---|
| Տիվրիկ | 3000 |
| Մալաթիա | 2000 |
| Հալէպ | 4500 |
| Ատանա | 6000 |
| Մարաշ | 1500 |
| Այնթապ | 18000 |
| Երուսաղէմ | 114000 |
| Վան | 8580 |
| » Վարագայ Ս. Նշան | 3000 |
| Բաղէշ | 5000 |
| Մուշ Ս. Կարապետ | 10000 |
| Ալաշկերտ և Պայազիտ | 1500 |
| Մուշ Ս. Յովհաննու վանք | 9360 |
| » Ղազարու Առաքելոց | 9380 |
| » Մատնա վանք | 3300 |
| » Կուխայ վանք | 5000 |
| » Աղբերիկ վանք | 16800 |
| Կարին | 5000 |
| Հասան-քալէ | 1000 |
| Խալէբ | 300 |
| Քղի | 6500 |
| Թերճան | 6360 |
| Սրվնկա | 8124 |
| Բաբերդ | 1460 |
| Տրապիզոն | 7500 |
| Ճանիկ | 5834 |
| Ամասիա և Մարզուան | 37005 |
| Եւդոկիա | 7410 |
| Շապին գարահիսար | 2200 |
| Սեբաստիա | 24900 |
| Ակն | 2094 |
| Արաբկիր | 5918 |
| Չմշկածագ և Կապան մադէն | 2400 |
| Չար սանճագ | 3351 |
| Բալու | 6300 |
| Խարբերդ | 10440 |
| Գուլէ վանք | 13315 |
| Սղերդ և Կոնոնա | 7725 |
| Տիգրանակերտ | 2800 |
| Մակարայեցւոյ վանք | 3000 |
| Ուրֆա | 1000 |

6. Նոր գիւղ
7. Գօյանի գիւղ
8. Այխաշֆանօ

թաղերը ։

Տնտես. Խորհուրդն այս տարեգրոյն մէջ եւս Ձեր Սրբազնութեան հոգածութեան ապաւինելով աներկիւղ է որ, Թաղ. Խորհուրդներն այլ եւս կրնան Պատրիարքարանի անուղղակի բարեկարգման կարեւորութիւնն եւ կ'օժանդակեն Վարչութեան, գոնէ իրենց պարտուց վճարմամբ, եւ այս առթիւ կը ներկայէ այն տրոց մասին իւր քանի մը անօրէնութիւնները, զորս նոյնպէս յայտագրած է Ժամանակին Քաղ. Ժողովոյ ։

Գարակէօմրիւկ.— Տեղւոյն Թաղ. Խորհուրդը Թաղային սնտուկին յատկացեալ քանչէլէրի տուրքն՝ տարեկան 3600 ղրշ.ի քանակութեամբ՝ 1880 թուականէն ի վեր անվճար թողած էր, եւ սակայն Եկեղեցւոյ սնտուկին անկարողութիւնը բացատրելով կառաջարկէր 1800 ղրշ.ի իջեցնել որոշեալ քանակութիւնն ։ Այս թաղի Ազգային գործոց վիճակը նախորդ Տնտես. Խորհրդոյ օրով այնպիսի՝ դիրք մը կ'առնու, որուն առջեւ նոյն Խորհուրդը ճարահատ՝ հաւանութեամբ Քաղ. Ժողովոյ՝ իւր անմիջական հսկողութեանը ներքեւ կ'առնու թաղային մատակարարութեան գործն, իր կողմէ ընտրեալ առժամեայ մարմնոյ մը յանձնելով զայն ։ Հետեւաբար միեւնոյն հողը պարտաւորելով ստանձնել նաեւ ներկայ Տնտես. Խորհուրդն՝ ի մօտոյ հսկողում ունէր Եկեղեցւոյ սնտուկին անկարողութեան, եւ առ այն դարմաններ անօրինելու եւ փոփոխութիւններ ընելու պարագային մէջ՝ անհնական էր ծանր քանակութեամբ տրոց պահանջումներ ընել, նամանաւանդ որ Եկեղ. կալուածական չինութեանց առթիւ Եկեղեցւոյ սնտուկը ծանրագոյն պարտուց ներքեւ կը տառապէր յոյժ, ուստի Տնտես. Խորհուրդը բաւական միջոցի մէջ 1800 ղրշ. հաշուով կը զիջէ 7200 ղրշ.ի գումար մը եւ մնացեալը կը գանձէ համահաւասար քանակութեամբ, որոշելով սակայն որ կալուածական չինութեանց լրումէն յետոյ՝ 3600 ղրշ.ի քանակութեամբ շարունակուի գանձուիլ քանչէլէրի տուրքն, ըստ առաջնոյն ։

Գուրու Չէշմէ.— Գիւղին եկեղեցւոյ սնտուկն ամսական 350 ղրշ. եկամուտ փոխարէն 850 ղրշ. ծախք, եւ հետեւաբար ամեն ամիս 4-500 ղրշ. եկամտից պաս մը ունենալով՝ անկարող էր յետնեալ տարիներէ գոյացեալ պարտուց վճարումն ընելու ։ Տնտես. Խորհուրդը զիջեալ 1700 ղրշ.էն 1200 ղրշ.ը զեղչելով՝ մնացեալ 500 ղրշ.ը՝ մաս առ մաս վճարուելու պայմանաւ, կարգադրեց այս թաղի քանչէլէրի. տրոց խնդիրն, որոշելով նաեւ որ սահմանեալ 100 ղրշ. տարեկան տուրքն յետ այսորիկ վճարուի շարունակապար ։

Տեղւոյն Թաղ. Խորհուրդն ընդունելով այն կարգադրութիւնն՝ գործադրել սկսած է ։

Գալաթա. — Տեղւոյն Թաղ. Խորհուրդն երեք տարիներ շարունակ քանչէլէրի տուրքն անվճար թողելէ զկնի կը խնդրէր սակայն, որ տարեկան 1500 ղրշ.ի քանակութիւնը 500 ղրշ.ի զեղչուելով ըստ այնմ պահանջուի յետնեալ տարիներու հաշիւն ։

Տնտես. Խորհուրդը տարեկան 1000 ղրշ.ի քանակութեամբ պահանջեց եւ առաւ քանչէլէրի պարտուց գումարն ամբողջովին ։

4. Դիւանական եւ դատական տուրքը.— Տնտես. Խորհուրդը տեսաւ որ դատական եւ անհատական տրոց համար Պատրիարքարան դիմող ազգայիններէն առնուած տրոց հասոյթըն՝ մանաւանդ վերջին 1882 եւ 83 տարիներու մէջ նուազած էին զգալապէս, եւ սորա պատճառն հետազօտելով տեղեկացաւ որ, 1882 թուականէն յետոյ արձանագրութեան համար յատկացեալ տուրքը չէ գանձուեր, եւ այսպէս աստիճանաբար նուազեր է նաեւ վճ-

ռագրի՝ վաւերացմանց և խրատտուութեամբ մերժուած գումարուն համար ըստ սահմանի կարգադրութեան սահմանի տրոց գումարն, և սորա հետեւութեամբ ազգային տուրքն։ Ուստի Տնտես. Խորհուրդը սոյն կրկին տրոց աղբիւրներն ըստ առաջնոյն մշակելու և արդիւնաւոր պաշելու համար մութով Թէև Գաւ. Գեր. Փոխանորդ Հօր հոգածութիւնը խնդրել, սակայն ներկայացուած տարիքութեանց պատճառաւ չկրցաւ յուսացուած արդիւնքը ձեռք բերել։

Տնտեսական Խորհուրդը հարկ կը գայ որ, սոյն կրկին տրոց գանձման համար ևս յատուկ օրէնք մը ծրագրուի, և միանգամայն անհրաժեշտաբար գանձուի ամեն խնդրագրոց և բողոքագրոց համար արձանագրութեան (ֆայրէ) տուրքը։

Այս կարգէն էր Առաջնորդական կոնդակի և Սահմանադրական կողմնակ ժողովոյ վաւերացման տուրքը։ Տնտես. Խորհուրդը Թէև առաջարկեց Քաղ. Ժողովոյ որ, առաջնորդական հրովարտակ կոնդակ, եպիսկոպոսական վկայագիր և Թաղային վաւերացմանց այն խնդիրներն, որք ծանրակշիռ չեն և բոհականութեան դէմ չեն համարուիր, որոշումն սահմանէ յետոյ յանձնուին Տնտես. Խորհրդոյ, որպէս զի կեդր. ատենակին հետ այսպիսեաց ունեցած դրամական խնդիրներն կարգադրուին նախապէս, և ապա յանձնուին կամ գործադրուին. սակայն պէտք կխոստովանիլ որ, Տնտես. Խորհրդոյ ամբողջ պաշտօնավարութեան շրջանին մէջ հազիւ քանի մը Թաղ. Խորհրդոց և Գաւառական Վարչութեան ընտրութեանց կոնդակները յանձնուեցան Տնտես. Խորհրդոյ նկատառմանն։

Այսու հանդերձ, Տնտես. Խորհուրդն ակն ունի որ, Ազգային Ժողովոյ կողմէ կարգուած Սիմոնեան Յանձնաժողովն՝ որոյ մասին քիչ մը վերջը պիտի խօսինք, ուշադրութեան նիւթ կընէ նաև սոյն կրկին տրոց խնդիրներն, և անոնց օրինաւորապէս գանձման եղանակը սահմանելով՝ իր աշխատութեանց չափ կը ներկայէ Ազգային Ժողովոյ ընդունելութեանը։

Տնտես. Խորհուրդը հասից գլխաւոր ճիւղերուն վրայ այս քանի մը տեղեկութիւնները տալէ յետոյ՝ հարկ կը համարի նաև Կեդր. ատենակի մի քանի ծախուց ճիւղերուն վրայ ծանօթութիւններ տալ։

Գ. Պատրիարքարանի Ներքին բարեկարգութեան Մասնաժողով. —

Տնտես. Խորհուրդը՝ կեդրոնական ատենակին ծանուցելով վիճակին մէջ Քաղ. Ժողովոյ կողմէ յաջորդաբար Պատրիարքարանի պաշտօնէութեան ամսաթոշակաց յաւելման հրահանգներ կընդունէր, ընդ որս կը գտնուէին նմանօրինակ քանի մը խնդիրներ՝ նախորդ Տնտես. Խորհրդոյ ընդունելութեանը չարժանացած։ Եւ որովհետեւ ժամանակը չէր կեդր. ատենակի ծախուց դռներն ընդլայնելու, քանի որ արդէն սահմանեալ ծախքերը դժուարութեամբ կը հայթայթուէին, եւ այս վիճակին մէջ բանաւոր չէր տնտեսագիտօրէն՝ առանց հիմնական բարենորոգմանց՝ նորանոր ծախուց դռներ բանալ, որ կրնար նաև քննադատութեանց նիւթ մատակարարել եւ զՏնտեսական Խորհուրդն ենթարկել ծանր պատասխանատուութեանց, ուստի Տնտես. Խորհուրդն ամեն բանէ առաջ իրեն եւ Քաղ. Ժողովոյն առաջին եւ անհրաժեշտ գործն համարեց հիմնական բարենորոգմանց եւ կարգադրութեանց խնդիրն, եւ հետեւապէս Պատրիարքարանի ներքին վիճակը կանոնաւորելու եւ զայն Ազգին արժանապատուութեան վայել դիրքի մը վերածելու, պաշտօնէից աշխատութիւնները ճշդելու եւ անոնց ամսաթոշակներն՝ արժանեաց, աշխատութեանց եւ գլխաւորապէս կեդր. ատենակի վիճակին համապատասխանօրէն սահմանելու համար՝ յատուկ Մասնախումբ մը պէտքն զգաց եւ առաջարկեց զայն Քաղ. Ժողովոյ։

Թէև սոյն Մասնախումբը կը կազմուէ

Տնտես. Խորհրդոյ եւ Քաղ. Ժողովոյ անդամներէն խառն, սակայն Մասնախումբն միայն պաշտօնէութեան աշխատութիւնները ճշդելով եւ անոր թոշակը սահմանելով՝ իւր տեղեկագիրը կը մատուցանէ, եւ Քաղաքական Ժողովն իւր 29 Փետր. 84 նիստին մէջ վաւերելով՝ կը յղէ Տնտես. Խորհրդոյ, 1884 Մարտ 1էն սկսեալ գործադրութեան դնելու յանձնարարութեամբ, եւ ըստ այսմ կը գործադրուի։

Սոյն տեղեկագրին համեմատ պաշտօնէից նախորդ 18800 ղուրուշի մօտ ամսաթոշակը 15000 ղրշ.ի զեղչուած է, հետեւեալ բաշխմամբ.

| | |
|---|---|
| Գաւառքաղաքական Փոխանորդի ամսական | 1400 |
| Հայերէնի Դիւանապետ եւ 3 օգնական | 3250 |
| Ատենադպիր | 600 |
| Տաճկերէնի Դիւանապետ եւ մէկ օգնական | 1950 |
| Զօրս ընդօրինակիչք | 1400 |
| Ատենադպրութեան սենեկի Դիւանապետ, մէկ օգնական, մէկ համարակալ եւ մէկ գանձապահ | 2600 |
| Փոխանորդարանի գրագիր | 500 |
| Բ. Դրան գործակատար 1 կամ 2 | 1400 |
| Սենեկապանք երեք եւ մէկ դռնապան | 600 |
| Թարգմանք չորս | 1300 |
| | 15000 |

Թէպէտ եւ մինչեւ Տնտես. Խորհրդոյ հրաժարման թուականը՝ փոքր ինչ զարտուղութեամբ՝ որ բացատրուած է քիչ մը վերը, գործադրութեան մէջ կը գտնուէր յիշեալ տեղեկագիրը, սակայն արժան է յայտնել որ, յիշեալ կարգադրութիւնը ոչ միայն Կեդր. սնտուկին տարապայման անձկութեան հետեւանքն եղած է, եւ ինչպէս Տնտես. Խորհուրդն քանիցս բացատրած է Քաղ. Ժողովոյ, կան պաշտօնեաներ՝ որոց թոշակն արդարեւ չհամապատասխաներ իրենց արժանեաց եւ աշխատութեանց, եւ անհրաժեշտ է որ, Կեդր. սնտուկն երբ փոքր ինչ բարւոքում գտնէ, առաջին առթիւ արժանաւոր պաշտօնէից ամսաթոշակաց խնդիրն ի նկատ առնուի եւ կարգադրուի, եւ վստահ է որ Ելմտական Պատուարժան Յանձնաժողովոյ ձեռք առած նախահոգ միջոցներուն շնորհիւ այս խնդիրն ալ բարւոք կարգադրութեան մը կը յանգի։

2. Ազգ. ժողովոյ ատենագրութեանց ծախքը. —

Կեդրոնական սնտուկի անխուսափելի ծախուց կարգն էր նաեւ Ազգային Ժողովոյ ատենագրական եւ դիւանական ծախքն, որ կը վճարուի անվրէպ։

Պատկառելի Ազգային Ժողովն իւր անցեալ տարեշրջանին մէջ ի նկատ առնլով Կեդրոնական սնտուկի նեղութիւնը՝ որոշեց որ, Ազգային Երեսփոխան էֆ.ներն՝ իւրաքանչիւր նիստի ատենագրութեան համար 100ական փարայ վճարեն, որպէս զի ատենագրութեանց տպագրութիւնը չյապաղի. եւ թէեւ Տնտեսական Խորհուրդն այս յուսով Ելմտացոյցը պատրաստած միջոցին Ազգ. Ժողովոյ ծախուց համար 12000 ղրուշ բաւական կը համարէ անցնել ելմտացոյցին մէջ, սակայն իւր յոյսն ի դերեւ կելնէ, եւ Երեսփոխան էֆէնտիք կը մոռնան իրենց քուէարկած որոշումն. իսկ Ազգային Ժողովոյ ծախուց գումարը վերջին միամեայ շրջանին մէջ 19559 ղրշ.ի կը յանգի։

Տնտես. Խորհուրդն իրաց այս վիճակին Ազգային Ժողովոյ Մայր Դիւանի Ատենապետ Էֆէնտիի ուշադրութեանը կը ներկայէ եւ կը խնդրէ որ, կազմէ ժամ յառաջ Ազգային Ժողովոյ ելմտից Յանձնախումբն եւ անոր ձեռօք ատենագրութեանց ստորագիններու յետնեալ գիները հաւաքելով յանձնէ Կեդր. սնտուկին։ Մայր Դիւանի Ատենապետ Էֆէնտին այս պաշտօնն մասնաւոր նամակաւ մը, ընդարձա-

թիւն Երեմեան Յանձնախմբի՝ Տնտես. Խորհրդոյ կը յանձնէ, որ մինչեւ ցայսօր շարունակելով 1884 Նստաշրջանի 1էն մինչեւ 14րդ Նիստի ատենագրութեանց տետրակներու գին 840 ղրուշ հաշիւ կրնայ հաւաքել 24 Երեսփոխան էֆէնտիներէ :

Նկատողութեան արժանի է նաեւ անցեալ տարեշրջանի Երեմեան Յանձնախմբին հաշիւը մինչեւ այսօր Ազգային Ժողովոյ չմատուցուիլը, որպէս զի կատարուէին տումարական գործողութիւններն, եւ Ազգային Ժողովոյ ծախուց ճիշդ եւ որոշ գումարն երեւան գար :

Ի վերայ այսր ամենայնի Տնտես. Խորհուրդը նկատելով որ, Ազգային Ժողովոյ ծախքերն ստիպողաբար վճարելի են եւ անընդհատ կը կատարուին, եւ թէ առանց նոր վարկ մը ի ձեռին ունենալու՝ չէ կարելի վճարումները շարունակել, արժան կը համարի դիմել Քաղ. Ժողովոյ հրահանգին, զոր թէեւ կսպասէ առնալ, սակայն ծախքերն դադրած չեն վճարուելէ, Ազգային Ժողովոյ Վսեմ. Ատենապետ էֆէնտիի ուղղակի առ Տնտես. Խորհուրդն տուած այն վստահութեանը վրայ թէ, Ժողովն իւր քուէովն պիտի հաստատէ իւր ծախուց վճարմանց առաւելութեան գումարը :

3· Տեղապահութեան թոշակ · — Երջանկայիշատակ Տ. Ներսէս Սրբազանի Պատրիարքութեան յաջորդող Տեղապահութեան համար, Քաղ. Ժողովն 1500 ղրշ·ի թոշակ մը յատկացուց, որ 1884 Նոյեմբեր 1 էն գործադրութեան դրուելով դադրեցաւ ներկայ 1885 տարւոյ Ապրիլ 17ին, որ է թուական ուխտի Պատրիարքութեան :

4· Դիւան Կրօն. Ժողովոյ · — Կրօնական Ժողովոյ Դիւանին համար բարեկարգութեան Մասնաժողովը 600 ղրշ. ամսական թոշակ մը սահմանած էր : Սոյն ամսականն 800 ղրշ·ի վերածելու մասին Կրօնական Սրբագումար Ժողովոյ առաջարկն ընդունելով գործադրուեցաւ, որովհետեւ Տնտես. Խորհրդոյ դիտողութիւններն այս մասին լսելի չեղան, եւ մինչեւ իսկ Խառն Ժողովոյ մէջ սկսաւ խնդիր լինել, երբ Տնտես. Խորհուրդը կրկին յայտագրերով անոր գործադրութեան դժուարութիւնները բացատրելով կը վարանէր ընդունել զայս յաւելումը :

5· Պատրիարքարանի հեռագրի ծախքը.— Տնտես Խորհուրդը մանաւանդ իւր պաշտօնավարութեան վերջին ամսուց մէջ տեսաւ որ, հեռագրի անուամբ չափազանց ծախքեր տեղի կունենան, եւ որոց պատճառ կը համարուէր վերջերս Վարչական Ժողովոյ որոշումներն ի գաւառս եւ ի գիւղօրէս հեռագրաւ հաղորդուիլն, հետեւապէս նկատելով որ կը գտնուէին խնդիրներ կամ որոշմունք, որք կրնային թղթատարով հաղորդուիլ, մանաւանդ այն քաղաքաց կամ գիւղօրէից, որք 12 կամ 24 ժամէ աւելի հեռաւորութիւն չունէին Մայրաքաղաքէս, ուստի իրաւացի դիտողութեամբ խնդրեց Քաղ. Ժողովէն, որ հոգ տարուի չափաւորել այս ծախքը, գոնէ մօտակայ քաղաքաց եւ գիւղօրէից հետ ըստ առաջնոյն նամակագրութեամբ բանակցելով :

6· Թոշակ պաշտօնէութեան · — Տնտես. Խորհուրդը Պատրիարքարանի պաշտօնէութեան թոշակաց հաշուոյն քիչ մ'առաջ ցոյց տրուած պարտքը թեթեւցնելէ յետոյ՝ բարեկարգութեան Մասնաժողովոյ սահմանած 15000 ղրշ. ամսաթոշակն ամեն ամիս օրինաւորապէս հատուցանելու, եւ պաշտօնէայք մանաւանդ յոռի դրութենէն՝ ուրկէ կը նեղուէին եւ կը վնասուէին մեծապէս, ազատելու համար ո՛չ նուազ հոգածութիւն ունեցաւ :

Կեդր. Սնտուկի նեղ վիճակին մէջ, որ արգելք մ'էր ամեն բարենորոգմանց եւ բարեկարգութեանց, Տնտես. Խորհուրդն առանց Քաղ. Ժողովոյ վրայ ծանրանալու՝ կրցաւ ըստ կարելւոյն պաշտօնէութեան ամսաթոշակաց

վճարման մասին կանոնաւորութիւն մը սահմանել, եւ 1885 տարւոյ Յունուարէն սկսեալ օրինաւոր վճարումներ ընել պաշտօնէութեան։

Տնտես. Խորհուրդը մասնաւորապէս իւր գոհունակութիւնը կը յայտնէ իւր անդամներէն Կամարական Մեծ. Խաչիկ էֆ.ի, որ միշտ անձնապէս պատրաստականութիւն ցոյց կուտար՝ երբ հարկը կը պահանջէր փոխառութեան դիմել, եւ յիշեալ էֆ.ի այս աջակցութիւնը մեծապէս դիւրեց՝ ելմտական նեղ պարագաներու մէջ Տնտես. Խորհրդոյ ձեռք առած գործոց տնօրէնութիւններն։ Կամարական էֆէնտի Տնտես. Խորհրդոյ 19 ամսեայ պաշտօնավարութեանը մէջ 600 ոսկւոյ մօտ փոխատուութիւն մ՚ըրաւ Կեդր. Սնտուկին՝

| | |
|---|---|
| 1883 Դեկտ. 31ին | 10324 ղրշ. |
| 1884 Ապրիլին | 21620 » |
| 1885 Յունվարին | 12690 » |
| 1885 Մայիսի մէջ | 1835 » |

եւ 100 ոսկւոյ մօտ գումար մը զանազան առիթներու մէջ՝ այս հաշուէն դուրս է շատ անգամներ 2, 5 եւ 10 ոսկի առ ձեռն տուած գումարներն, եւ այսպէս բնաւին դրամական մտածում չպատճառեց Տնտես. Խորհրդոյ բազմայբաղ սեղանին վրայ։

Արդարեւ գովեստից արժանի է այն ձեռնտուութիւնն եւ յուսալի է որ, բարի օրինակ մը լինի յաջորդ Տնտես. Խորհրդականաց, գիտնալու համար թէ, Կեդր. Սնտուկն երբ լաւ մատակարարուի եւ փոխառեալ գումարներն ժամանակին և ըստ պայմանին վճարուին, Սնտուկին վարկը կուգայ կը հասնի հոն, ուր ինքնաբերաբար կը դիմեն փոխատուք, պէտք եղած ժամանակ: Տնտես. Խորհուրդն այս մասին կրած դիւրութեանն համար իւր կողմէ, եւ Ս. Զատկի եւ Ծննդեան տօներու առթիւ պաշտօնէից եղած գոհացուցիչ վճարմանց համար յանուն պաշտօնէութեան՝ պարտք կը համարի իւր շնորհակալութիւնը յայտնել առ Կամարական Խաչիկ էֆէնտի։

Կեդր. Սնտուկի այլ հաշուական եւ ելմտական կէտերն թէեւ հակիրճ, բայց որոշակի բացատրուած լինելով զանազան առիթներու մէջ, Տնտես. Խորհուրդը կը մատուցանէ Կեդր. Սնտուկի 1884-85 տարւոյ հաշուեցոյցն, կցելով զայն ի վերջ տեղեկագրոյս։

Սոյն Հաշուեցոյցը չորս մասերու բաժանեալ է երկու տախտակներու վրայ.

1. Նախորդ վիճակ
2. Ծախք և Հասոյթ
3. Հաշուեկշիռ
4. Բացատրութեան գոյք հաշուոյ։

1° Նախորդ վիճակ. — (Ա. տախտակ)

Ինչպէս հաշուեցոյցին մէջ կերեւի, անցեալ տարեշրջանին Կեդր. Սնտուկը 153783.72½ ղրշ. հին տարիներէ մնացորդ պարտք մը ունէր ամենամեծ մասամբ փտուն և ջնջելի, նոյնպէս 229176,75 ղրշ. վճարելի պարտք մի կար, որ 1884–85 տարեշրջանին մէջ 87333,25 ղրշ ի իջած է, բայց այս պատճառաւ 110615 ղրշ. որ կը բաղկանայ 84–85 տարւոյ ծախուց անվճար մնացած 80173,25 դահեկանէ նոյնպէս և 84ի մէջ եղած փոխառութեանց վրայ անվճար մնացած 30446,½ ղրշ.ի գումարներէն, նոր պարտք մը գոյացած է նոյն շրջանին մէջ, և այսօր 197949 ղրշ.ի բարձրացած կերեւի յիշեալ պարտուց գումարն, որ անհրաժեշտաբար վճարելի է. իսկ հին տարիներէ մնացած 153783,72½ ղրշ. պարտուց գումարն՝ ինչպէս Նախորդ Տնտես. Խորհուրդները բազմիցս դիտել տուած են, ամենամեծ մասամբ ջնջելի են, պարտատէրներէն ոմանց անյայտ լինելուն, և պարտուց մէկ մասն այսօր գոյութիւն չունենալուն պատճառաւ։

Փոխարէն, Նախորդ շրջանին մէջ 634624,7½ ղրշ. զանազաններէ պահանջք մը կերեւի. Տնտես. Խորհուրդը տեսաւ որ այն գումարին մէջ 245887 ղրշ.ի շատ պահանջքներ կան, որոց մէկ մասին տէրերն թէեւ ողջ, սակայն գանձումն անյոյս և գրեթէ անհնար է, ուստի այս գումարը վեղչեց և կասկածելի պահանջք անուամբ հաշիւ մը բանալով՝ շահ և վնասի մէջ պահեց, ձեռնհաս ժողովին որոշմանն են-

թողլու համար, որպէս զի յառաջիկային բոլորովին ազատի հաշուեառումարներէն։

Վերոյիշեալ կասկածելի պահանջքները զատելէ զկնի 'ի բաց առեալ Կեդրոնական տրոց անվճար մնան որոց գումարը յաջորդ շրջանի մէջ պիտի արձանագրուի Ազգային Պատրիարքարանի տումարներու մէջ, տակաւին 378198 դրշ·ի պահանջք մը կերևի, որոյ մեծ մասը թէև անգանձելի, և հետևաբար արժան է ջնջելի նկատել, սակայն փոքր մը կը կարօտի, և հասուն քննութենէ և հետաքօտութենէ մը յետոյ՝ գանձելու կամ ջնջելու գործողութիւնը կը վերապահէ իւր յաջորդին։

Հաշուեկշռին մէջ (տես Ա· տախտակ) պահանջից կարգը կերևի նաև 570974,50 դրշ·ի գումար մը, մուգաթայի և քանչլէրի տրոց յետնեալ տարիներու հաշուէն։ Տնտես· Խորհուրդը սոյն գումարին մէկ մասը ջնջելի կը նկատէ, տեսնելով որ գաւառներէն ոմանք սովու և աւարառութեանց պատճառներով անկարողութիւն կը յայտնեն տալու, և ոմանք իրենց պարտքը վճարեալ ցոյց կուտան, առարկելով որ, եկող գացող Առաջնորդները մուգաթայ հաւաքած են՝ այդ Առաջնորդաց անկ է կարգադրել պահանջուած հաշիւն և հետևաբար չեն կրող վերստին ժողովրդեան վրայ ծանրանալով՝ փակուած տարիներու համար մուգաթայ հաւաքել, սակայն քննութիւն մը անհրաժեշտ է՝ այդ առարկութեանց ճշդութիւնն ստուգելէ յետոյ՝ հաշիւները մաքրելու համար։ Այս տեսակէտով էր որ Տնտես· Խորհուրդն անցեալ շրջանին մէջ այս կարգի անյոյս պահանջքներէն 36682 դրշ·ի չափ գումար մը սրբեց Կեդր· հաշուեառումարներէն, ինչպէս բացատրուած է իւր կարգին։

**2° Ծախք և հասոյթ (Բ· տախտակ)**

Կեդր· սնտուկը 84-85 տարւոյ մէջ 438006 դրշ·ի զուտ հասոյթ մը ունեցած է, և փոխարէն թէև 408271 դրշ· ծախք մը կերևի, սակայն անոնց մէջէն 80173 դրշ·ն անվճար կը մնայ։ Այս գումարը զեղչելով՝ կը մնայ 328098,25 դրշ· ուղղակի Կեդր· սնտուկէն վճարեալ, որոյ վրայ յաւելլնելով հին պարտուց վճարուած 137631, 30 դրշ·ը, կը լինի 465729, 75 դրշ·ի, յորմէ զեղչելով 438006 դրշ· հասոյթից գումարը, տարբերութիւն կը մնայ 27723, 62½ դրշ· որ է անցեալ 84–85 շրջանի Կեդր· սնտուկի բացը։ Ուրեմն պէտք է հետևցնել որ Տնտես· Խորհուրդը 84-85 շրջանին մէջ 110615 դրշ· պարտք մը գոյացուցեր է, և միւս կողմէ հին տարիներու հաշւոյն 137731 դրշ· պարտաւորիչ պարտուց վճարում մը կատարեր է, որ եթէ տեղի չունենար, ո՛չ միայն 84-85ի շրջանին մէջ պարտք չպիտի գոյանար, այլ և հին պարտուց կամ ուրիշ կարևոր պիտոյից համար 27016 դրշ· հասութից աւելորդութիւն մը պիտի ունենար։

Արդ, Տնտես· Խորհուրդը, Կեդր· սնտուկի նախընթաց և անցեալ տարիներու հասից և ծախուց գումարներուն տարբերութիւնն և նուազութիւնն երևան բերելու համար, պատրաստեց ելևմտից բաղդատական պատկերն, որ կցեալ է Տեղեկագրիս, և որ որոշ կերպիւ ցոյց կուտայ թէ, 1883–84 տարւոյ հետ բաղդատմամբ՝ անցեալ տարի հասութից կամ ծախուց ո՛ր ճիւղերն աւելի կամ նուազ քանակութեամբ տեղի ունեցած են։

Ա· Կեդր· ուղղակի տուրքէ 1883—84 տարւոյ մէջ 124270 դրշ·ի գումար մը գոյացեր է, 84-35 տարւոյ մէջ 142755· ըսել է 18485 դրշ· աւելի, իսկ Ելմտացոյցի սահմանած գումարէն 22755 դրշ աւելի։

Բ· Գաւառական մուգաթայի տուրքէն 1883—84 տարւոյն մէջ 51150 դրշ· եւ քանչլէրէ 20144 դրշ· ընդ ամենն 71294 դրուշ գանձուած է· 1884-85 տարւոյ մուգաթայէ 22 98 եւ քանչլէրէ 31527 ½ դրշ, ընդ ամենն 54326 ½· ըսել է սոյն կրկին տուրքերէն 83—84 տարւոյ վրայ 16967 ½ եւ Ելմտացոյցէն 70673 ½ դրշ· պակաս։

Գ· Անցագրատան առուծախի վկայագրոց հասոյթէն մինչդեռ 1883—84 տարի 78410 դրշ· արդիւնք արտադրեր է, 84—85 շրջանի մէջ 69270 դրշ· ինկաւ, ըսել է նախնթաց տարիէն 9140 դրշ· իսկ Ելմտացոյցի սահմանած գումարէն 20730 դրշ· պակաս։

Դ· Ճամբորդաց անցագրի հասոյթն՝ որ կը

գոյանալ աղքատութեան անցագիր, արհեստաւորք արտօնագիր եւ մեծիմէ տանելու համար տրուած իմուխապէրներու վաւերացումէն, 1883—84 տարւոյ մէջ 11832 ղրշ. արդիւնք ունեցեր է, 84-85 տարւոյ մէջ 47569, 25 ղրշ. հասոյթ բերաւ. ըսել է 35737, 25 ղրշ աւելի ։

Ե. Նշանտուութեան հասոյթէն 1883—84 տարւոյ մէջ 70675 ղրշ։ի գումար մը գոյացեր էր, 84-85 տարւոյ մէջ 79291 ղրշ. արդիւնք բերաւ. ըսել է 8616 ղրշ. նախընթաց տարիէն, եւ 29291 ղրշ. Նախահաշուի սահմանուած գումարէն աւելի ։

Զ. Պսակագրութեան հրամանի հասոյթն, որ 1883—84 տարւոյ մէջ 20410 ղրշ. արտադրած էր, 84-85 տարւոյ մէջ 17733 եղաւ. ըսել է 2676 ¹/₂ ղրշ. նախընթաց տարիէն, եւ 266 ¹/₂ ղրշ. Նախահաշուի գումարէն նուազ։

Է. Դիւանական հասոյթն, որ կը գոյանայ դիւանատան կողմէ տրուած զանազան վկայագրերէ եւ վաւերացման գործողութիւններէ, մինչդեռ 83-84 տարւոյ մէջ 11006 ղրշ. գոյացեր է, 84-85 տարւոյ մէջ 10525 ղրշ. բերաւ, ըսել է 83-84 տարւոյ վրայ 481 ղրշ. պակաս, իսկ Նախահաշուի գումարէն 2525 ղրշ. աւելի ։

Ը. Դատական հասոյթն՝ որ անհատական դատերէ կը գոյանայ եւ կը գանձուի մասնաւոր օրէնքի մը համաձայն, մինչդեռ 83—84 տարւոյ մէջ 1481 ղրշ. արդիւնք ունեցեր է, 84—85 տարւոյ մէջ 866 ղրշ. բերաւ, ըսել է 615 ղրշ. նախընթաց տարիէն, եւ 1134 ղրշ. Նախահաշուի գումարէն նուազ ։

Թ. Դրօշմաթուղթի հասոյթն, որ կը գոյանայ կալուածական վկայագրերը գրելու համար Թաղ. Խորհրդոց ղրկուած դրօշմաւոր թղթերէն, մինչդեռ 83—84 տարւոյ մէջ 850 ղրշ. արդիւնք ունեցեր է, 84—85 տարւոյ մէջ 1000 ղրշ. բերաւ. ըսել է 150 ղրշ. աւելի, իսկ Նախահաշուէն 500 ղրշ. նուազ ։

Ժ. Կոնդակագին, որ պաշտօնական ընտրութեանց հաստատութեան համար տրուած Պատրիարքական կոնդակներէ կառնուի, 83-84 տարւոյ մէջ մինչդեռ 515 ղրշ. արդիւնք ունեցեր է, 84—85 տարւոյ մէջ 240 ղրշ. հասոյթ բերաւ. այսինքն 275 ղրշ. պակաս ։

ԺԱ. Զանազան հասոյթէն՝ որ կը գոյանայ ծննդոց՝ վախճանմանց եւ խնամախօսութեան ծանուցագրերէ, Եկեղեցեաց բակին ազգայնոց թաղման առթիւ առնուած տուրքերէն եւ ըստ դիպաց եւ տեսակաւ անորոշ գանձումներէ, մինչդեռ 83—84 տարւոյ մէջ 18542 ¹/₂ ղրշ. արդիւնք եկեր է, 84—85 տարւոյ մէջ 10484 ղրշ. ինկաւ, ըսել է 8053 ¹/₂ ղրշ. պակաս, իսկ Նախահաշուի նշանակած գումարէն 6984 ղրշ. աւելի ։

ԺԲ. Զնտանի քանտարկելոց հասոյթն՝ որ Զատկի առթիւ Մայրաքաղաքիս Եկեղեցեաց մէջ շրջագայած սնակէն կը գոյանայ եւ Պատրիարքարանի միջոցաւ բանտարկելոց կը մատակարարուի, մինչդեռ 83-84 տարւոյ մէջ 4649, 37 ¹/₂ ղրշ. հաւաքուած էր, 84—85 տարւոյ մէջ 3946, 87 ¹/₂ ղրշ. արդիւնք բերաւ, այսինքն 701, 60 ղրշ. նուազ ։

Կեդր. սնտուկի ծախուց ճիւղերն են.

Ա. Պատրիարքական Թոշակ. 1883-84 տարւոյ մէջ վճարեալ է 60000 ղրշ. իսկ անցեալ տարի մինչեւ Նոյեմբեր ամիս 25000 ղրշ. բաց աստի 8300 ղրշ.ի գումար մը Տեղապահութեան Թոշակի վճարուեցաւ ։

Բ. Թոշակ պաշտօնէութեան՝ 83-84 տարւոյ մէջ վճարեալ է 225450 ղրշ. 84—85 տարւոյ մէջ այս ծախքը 177840 ղրշ.ի իջած է, այսինքն Կեդր. սնտուկը 47640 ղրշ.ի խնայողութիւն մ'ունեցած է նախընթաց տարւոյ վրայ, իսկ Նախահաշուին հետ բաղդատմամբ 2190 ղրշ.ի նուազութիւն մը ։

Գ. Նպաստի ամսականք. զորս Կեդր. սնտուկը կը վճարէ քանի մը կարօտ Եկեղեցեաց քահանայից և Էթմէյտանի Թաղի Ազգ. դպրոցին, մինչդեռ 83-84 տարւոյ մէջ 4400 ղրշ. վճարուեր է, 84-85 տարւոյ մէջ 3900 ղրշ. միայն ծախք տեղի ունեցաւ, քանի մ'ամիսներ Պուր-

կազմի քաղաքային հրաժարելուն պատճառաւ։ Նոյն ծախքը 4600 ղրշ·ի նուազ տարբերութիւն մ'ունի Ելմտացոյցի սահմանած գումարէն ։

Դ. Նպաստ Հիւանդանոցի. Կեդր. սնտուկը Հիւանդանոցի մատակարարութեան գումար մը կը վճարէ, մասնաւորապէս նշանատուութեան և անցագրատան հասոյթներէն, 83—84 տարւոյ մէջ վճարուած նպաստից գումարն է 47169, 50, իսկ 84—85 տարւոյ մէջ 87214, 75 ղրշ. վճարուեր է նոյն կրկին հասութից արտադրած քանակութեան չափովը, ըսել է 40045, 25 աւելի ։

Ե. Գրական պիտոյք. մինչդեռ 83—84 տարւոյ մէջ այս ճիւղին համար 5327, 75 ղրշ. ծախք տեղի գտած էր, 84-85 տարւոյ մէջ 5089ղրշ·ի զեղչուած է այդ ծախքն, որ թէև 238,75 ղրշ·ի խնայողութիւն մը երևան կուգայ, սակայն Ելմտացոյցի սահմանած գումարէն 1589 ղրշ. աւելութիւն ունի ։

Զ. Թղթատար և Հեռագիր. 1883-84 տարի այս ծախուց գումարն եղած էր 7759,50 ղրշ. իսկ 84—85 տարւոյ մէջ բարձրացած է 9594,50 ղրշ·ի այսինքն 1835 ղրշ. նախընթաց տարիէն, և 3594,50 ղրշ. Ելմտացոյցի գումարէն աւելի։ Նոյն ծախուց աւելութեան պատճառն է Տեղապահական և Պատրիարքական ընտրութիւններն ծանուցանող հեռագրերն, և շատ ժամանակ Վարչական ժողովոյ որոշումներն հեռագրաւ ի գաւառս հաղորդելու դրութիւնն, որու վրայ քիչ մը յառաջ խօսուած է ։

Է. Լրագրաց բաժանորդագին. 83-84 տարւոյ մէջ վճարուած գումարն է 3116,25 ղրշ. 84-85 տարւոյ մէջ վճարուեցաւ 2234,75 ղրշ. ըսել է 881,50 նախընթաց տարիէն, և 265, 25 ղրշ. Ելմտացոյցէն նուազ քանակութեամբ տեղի գտած է այս ծախքը ։

Ը. Տպագրութիւն. մինչդեռ 83-84 տարւոյ մէջ 6110 ղրշ·ի հասած է այս ճիւղի ծախուց գումարն, անցեալ տարի 2438 ղրշ·ի իջած է, 3672 ղրշ·ի խնայողութեամբ, և Ելմտացոյցէն 4652 ղրշ. նուազ ։

Թ. Պաշտօնական երթևեկի կամ յարաբերութեան ծախք. 1883-84 տարւոյ մէջ 13416, 25 ղրշ. տեղի ունեցեր է, 84-85 տարւոյ մէջ 11223, 25 ղրշ·ի իջած է, այսինքն, 2193 ղրշ. թէև պակաս, սակայն 4223, 25 ղրշ. աւելութեամբ Ելմտացոյցի գումարէն ։ Այս ծախքն աւելի նուազ քանակութեամբ պիտի տեսնուէր անցեալ տարւոյ հաշուեցոյցին մէջ, եթէ Տեղապահական և Պատրիարքական յաջորդական ընտրութեանց առթիւ պաշտօնական երթևեկութիւնք տեղի չունենային ։

Ժ. Նպաստ կարօտելոց. որ կը գոյանայ կարօտելոց տրուած ողորմութեանց և ուղեգնի ծախքէն, 83-84 տարւոյ մէջ այս ճիւղի ծախուց գումարն եղած է 3763, 75 ղրշ. իսկ 84-85 տարւոյ մէջ 5213, 50ի բարձրացած է, այսինքն 1449, 75 ղրշ. նախընթաց տարիէն, և 2213,50 ղրշ. Ելմտացոյցի սահմանած գումարէն աւելի քանակութեամբ ։

ԺԱ. Ընդհանուր ծախք, որ կը կազմուի

1. Պատրիարքարանի կարասիք և նորոգութիւն. մինչդեռ 83—84 տարւոյ մէջ 834, 25 ղրշ·ի գումար մը ծախք եղած էր, 84-85 տարւոյ մէջ 1806, 75 ղրշ·ի ելած է այս ծախքըն, ըսել է 972, 50 ղրշ. աւելի, իսկ Ելմըտացոյցէն 1193, 25 ղրշ. պակաս ։

2. Հանդերձագին բարապանաց և սենեկապանաց. 1883—84 տարւոյ մէջ 5377, 50 ղրշ·ի գումար մը վճարուած կը տեսնուի այս ծախուց ճիւղին համար, 84-85 տարին 5094 ղրշ·ով գոցուած է, թէև 283, 50 ղրշ. պակաս, սակայն 1094 ղրշ. աւելի Ելմտացոյցի գումարէն ։

3. Վառելեաց, սուրճի և շաքարի. 83-84 տարւոյ մէջ 3509 ղրշ. տեղի ունեցեր է այս ծախքն, իսկ 84-85 տարւոյ մէջ 4394, 25 ղրշ. ըսել է 885, 25 ղրշ. աւելի, իսկ 1605, 75 պակաս Ելմտացոյցի գումարէն ։

4. Նշանի խաչ և տուփ. մինչդեռ 1883-84 տարւոյ մէջ 3369, 25 ղրշ. տեղի ունեցեր է այս ճիւղի ծախքն, 84-85 տարի 788-50

# ՏԵՂԵԿԱԳԻՐ

## ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ ԱԻԱՆԴԻՑ ԱՐԿՂԻ

Աւանդից արկղի կանոնագրին 7 րդ. յօդուածին տրամադրութեան համեմատ, անհրաժեշտ լինելով նաև հրաժեշտի ժամուն համարատուութեան կցեալ տեղեկագրով մը նոյն արկղին համարը տալ, Տնտես. Խորհուրդը կը փութայ կատարել նաև իր այն պարտաւորութիւնը ։

Տնտես. Խորհուրդն աւանդից արկղի հաշուին իր նախորդէն ստանալէ և զանոնք օրինաւորապէս և մանրամասնօրէն ելեմտից եղանակաւ յատուկ տումարի մը մէջ արձանագրելէ յետոյ՝ ըստ նոյն տումարի նոյն արկղին մէջ պատրաստ կը թողու ։

1. Գանձէ Հոգելոյս Տ. Ներսէս Ս. Պատրիարքի ․

2. Ասորերէն գրութիւն մը՝ հնութիւն համարուած ․

3. Խասգիւղի Շ. Նուպար վարժարանի կալուածագիրն և Հոգելոյս Կարապետ վարդապետի բնագիր կտակագիրն ․

4. Հրամանագիր Բերայի մէջ վաճառականական դպրոցի մը հաստատութեան ․

5. Բնագիր տումար արձանագրութեան և հաշուեթղթեր Կամարական հանգուցեալ Գէորգ աղայի որբոց վերաբերեալ ․

6. Ծրար մը՝ Թէոդորեան Սարգիս վարդապետի կտակին վերաբերեալ ․

7. Ծրար մը՝ Ապուչեխ գիւղի Թաղ. Խորհրդոյ և Համամճեան ժառանգորդաց միջև եղած պահանջքի խնդրոյն վերաբերեալ ընկալագրոց և ապահովագրոց ․

8. Ծրար մը՝ վառօդարանի մէջ հրկիզեալ ազգայնոց վերաբերեալ ․

9. Ծրար մը՝ զանազան Ազգ. հաստատութեանց մասնաւոր անձերէ ունեցած պահանջքին վերաբերեալ պարտամուրհակներու ․

10. Ծրար մը՝ Վանայ Արարուց Եկեղ. սեպհական Մայրաքաղաքս գտնուած կալուածոց կալուածագրերը պարունակող ․

11. Ծրար մը՝ զանազան առթիւ այլ և այլ անձերէ առնուած ընկալագրեր՝ ապահովագրեր և երաշխաւորագրեր պարունակող ․

12. Ծրար մը՝ Կեսարիոյ Թավլուսըն գիւղի Ս. Թորոս Եկեղ. սնտուկին վերաբերեալ պահանջից պարտամուրհակներուն ․

13. Իւսկ. Իհսանիէի դպրոցին շինութեան հրովարտակը ․

14. Իհսանիէի դպրոցին վագըֆը մխալֆի փոխադրուելուն իլմը ․

15. Իհսանիէի դպրոցին և Եկեղեցւոյ գետնին վերաբերեալ կալուածագիր մը ․

16. Ակնայ Ապուչեխ գիւղի Ս. Նշան Եկեղեցւոյ սեպհական կալուածոց ութ կտոր կալուածագրերն ․

17. Վանայ Արարուց Եկեղեցւոյ ի Մայրաքաղաքս ունեցած կալուածոց կալուածագրերն ․

18. Ֆերմաններ՝ Պատրիարքութեան և այլոց վերաբերեալ ․

19. Վագֆի տումարներ Ազգ. հաստատութեանց վերաբերեալ ․

20. Կնքեալ կտակագիր մը, յետ մահու կտակարարին բացուելու պայմանաւ ․

21. Զանազան կտակագրեր ։

Տնտես. Խորհուրդը յիշեալ ծրարներուն պարունակութիւնը մանրամասնօրէն տալ նշանակել աւելորդ աշխատութիւն մը կը նկա-

տէ, ըստ որում անոնց մանրամասնութիւնը՝ որ առաւար տեղ մը գրուած է, կը տեսնուի արձանագրութեան տումարին մէջ։

22. Ալլահվէրտեան և այլ ժառանգութեանց պատկանեալ 28 բուրի 30 քարիր

23. Սիվրիհիսարի հրկիզելոց պատկանեալ 420 ղրշ. Թղթադրամ

24. Նորը գաւառի Եկեղեցւոյ պատկանեալ 5 կտոր արծաթ.

25. Վարչական հին կնիքներ տոպրակով մը կնքեալ.

26. Գանթարճի Յակոբի որբոց պատկանեալ ութ կտոր երկաթուղւոյ արժեթղթեր, թիւ 1336183, 1108125, 963584, 937303, 744067, 482851, 319403 և 242641։

27. Ա. Բ. Գ. և Զնաչխարհեկ լուծեալ Ընկ. ստացուածքէն գանձուած չորս կտոր երկաթուղւոյ արժեթղթեր, որոց թիւերը կը տեսնուին տեղեկագրոյս մէջ.

28 Վանայ Կարճկանու գիւղին վերաբերեալ ոսկի մետալիոն մը, քօրտօն մը, և դրամ, 1282 ղրշ.

29. Սորքայ Ս. Կարապետի վանուց վարժարանին ի նպաստ շրջաբերած գանձանակին արդիւնքը 202 ղրուշ

30. Վառօդարանի հրկիզելոց պատկանեալ 154 ղրուշ Թղթադրամ,

31. Սամաթիոյ դպրոց Ընկ. վերաբերեալ 4557 ղրուշ Թղթադրամն ինչպէս բացատրուած է ի տեղեկագրոյս, յիշեալ Ընկ. Ճօֆի առաւօտի արդիւնքէն գոյացեալ է յիշեալ գումարն. Տնտես. Խորհուրդը Հոգևոյս Տ. Ներսէս Ս. Պատրիարքի հրամանին համեմատ յիշեալ առաւօտին գոյացեալ արծաթ և մեթալիք դրամները՝ Սամաթիոյ Եկեղ. չնութեան իբր փոխատուութիւն՝ յանձնած ըլլալով տեղւոյն Թաղ. Խորհրդոյն, Թղթադրամի յանձնման մասին երկիցս Թաղ. ժողովէն հրաւէրք խնդրեց, զոր ցարդ չկրնալով առնել, որ և է գործողութիւն մը չկրցաւ կատարել այս մասին։ Թէ՛ այդ Թղթադրամն ի՛նչ պատճառաւ ոսկւոյ չէ վերածուած ժամանակին, Տնտես. Խորհուրդը պարտաւորեալ չգտնէր զինքն այս մասին բացատրութիւններ տալու, նկատելով որ խնդիրն իր պաշտօնավարութեան ժամանակակից չէ։

32 Ծերի գիւղի Եկեղ. մատուռին պատկանեալ 200 ոսկւոյ մուրհակներ. — Այս գումարը տեղւոյն Թաղ. Խորհրդոյ առաջարկութեան համեմատ տոկոսի յանձնուած է Ազգային Հաստատութեանց։

33. Ի նպաստ Զէյթունի հրկիզելոց Ազգային Բողոքէն ղրկուած 54 Թղթ. բուրի
Գոյձեալ 200 Օսմ. ոսկի

34. Շապին-Գարահիսարի վերի Անդրիկի գիւղի դպրոցին անուամբ հաւաքեալ դրամէն ձեռք բերուած 605 ղրուշ։

# ՎԵՐՋԱԲԱՆ

Տնտես. Խորհուրդն իւր համարատուութեան տեղեկագիրը կնքելու վայրկենին պարտ անձին կը համարի յայտարարել որ, Քաղ. Ժողովն երբ ի գործ դնէր իւր համարատուութեան իրաւունքը, գոնէ աչօք այնոր գնահատէր Տնտես. Խորհրդոյս արարքը, զի եղած են Տնտես. Խորհուրդներ, որ բնաւին համար ներկայացուցած չեն, և կը տեսնուի համարատուութեան անջրպետ մը 1872 թուականէն մինչև 1878 և 1878 էն 1884-85 թուականի միջև, և հետևապէս անծանօթ կը մնան Վարչութեան այս միջոցին եկող գացող Տնտես. Խորհրդոց արարքն, զորս կարժէր որ ժամանակին նկատողութեան առնուէին։ Երբ Վարչութեան համարատուութեան իրաւունքն անհրաժեշտաբար ի գործ դրուի, Տեսուչ Խորհրդոց գործերը քննութեան ենթարկուին, և ընդ նոյն ուշադրութեան առնուին անոնց խորհրդածութիւններն՝ առաջարկներն և դիտողութիւններն, և մանաւանդ եթէ Քաղ. Ժողովը դնէ զանոնք ազատօրէն շարժելու կարողութեանը մէջ, տարակոյս չկայ թէ, ազգին աւելի նշանաւոր ծառայութիւններ կրնան մատուցանել։

Տնտեսական Խորհուրդը՝ զուրկ աջակցութենէ՝ կրցաւ կռուիլ ըստ կարելւոյն անվերջանալի խնդրոց հետ, գործեց անվհատ և չդեդևեցաւ մինչև իսկ անձնական զոհողութիւններով դրամական խնդիրներն անմիջական կերպիւ տնօրինելու, առանց հոգ և մտածում պատճառելու Վարչութեան, և ըստ Սահմ. իւր պաշտօնավարութեան շրջանն աւարտելէ զկնի՝ Ամենապատիւ Սրբազնութեանդ քաջալերիչ յորդորներէն խրախուսեալ քանի մ'ամիսներ աւելի պաշտօնավարելով կը կնքէ իւր 19ամեայ համարատուութեան տեղեկագիրն հրաժեշտին հանդերձ, բայց և այնպէս անմխիթար չմեկնիր, յուսալով որ իւր վրայ ծանրացող երրեակ պաշտօնները կարելի եղածին չափ Ազգին օգտակար եղանակաւ ի գործ դրած է, քանի որ ազգին շահը իրեն կէտ նպատակի ունեցած, և ջանացած է միշտ ազատ պահել Քաղ. Ժողովը դրամական տագնապներէ, զորս հեշտիւ իւր անձնուէր ծառայութեանց քաջալերը կը համարի։

Տնտ. Խորհրդոյ մը գործառնութիւնք կրնան միշտ արդիւնաւոր լինիլ, երբ վայելեն Քաղ. Պատկ. Ժողովոյ աջակցութիւն. Հետևաբար կը բարեմաղթեմք որ մեր յաջորդներն իրենց ժամանակի Քաղ. Ժողովոյն աջակցութիւնը վայելելով՝ աւելի արդիւնաւորին իրենց աշխատութիւններն։

Մնամք որդիական յարգանօք
Ի դիմաց Տնտես. Խորհրդոյ
Ատենադպիր Ատենապետ
Մ. ԶՕՂԱՆԵԱՆ Գ. ԳԱԲՐԻԷԼԵԱՆ

# ՎԻՃԱԿ ԽՆԴԻՐՈՑ

Քաղաքական խորհրդոյ 19 ամսեայ պաշտօնավարութեան ՂԳ-ՐԴ նիստերուն խնդրոց ցուցակաց համագումարն է 1992, այսինքն միջին հաշուով իւրաքանչիւր նիստի 21 խնդիրներ, որոց տեսակներն բաց ի եկեղեցագրոյ նշանակելիներէն՝ են հետեւեալները, որք հանրային կարեւորութիւն չունենալուն բաւական կը համարուի անոնց մէկ համառօտ ցանկը նշանակել, այլապէսնի կարդալ.

1. Ահ եօլու Գուրկայի քաղաքային յառաջացեալ առաջարկը. Որոշուած

2. Ակնայ Ապուշէխ գիւղի Ս. Նշան Եկեղեցւոյ սեպհական կալուածի մը վաճառման առաջարկը. Մերժուած

3. Տ. Առաքել Հանգ. քահանայի որդւոյն կրթութեան համար խնդրուած նպաստը. Գործադրութեամբ վերջացած

4. Ա. Թ.ի խնդրած նպաստը. Մերժուած

5. Ա. Գ. եկեղեցականներին փոխատուութեան խնդիրը. Գործ. վերջացած

6. Աղաւնի Յակոբեանի ի Գալաթ անեցած կալուածական խնդիրը. Վերջացած

7. Անդրէաս վարժապետի պահանջքը Ֆէրի գիւղի Եկեղ. սնտուկէն. Վերջացած

8. Արուսեակ Տօղրամաճեանի տան խընդիրը Գասըմ փաշայի Թաղ. Խորհրդոյ հետ. Բացատրութեան կսպասուի

9. Ակիւլինէ Յակոբեանի կալուածական ֆէրմանը Ս. Խաչ Եկեղ. վրայ. Վերջացած

10. Ազգային ուղղակի տրոց ընկալագրոց տպագրութեան խնդիրը. Վերջացած

11. Արքունի բանտին մէջ վախճանող ազգայնոց թաղման ծախուց խնդիրը. Վերջացած

12. Ամասիայի Ե. ազգայնոց մը ճանապարհի ծախքը. Վերջացած

13. Ազգային կեդր. վարժարանին խնդիրը և հանգանակութիւնը. Վարչութեան սեղանին վրայ

14. Անցագրերու խնդիրն. Որոշուած

15. Արաբկիրի Գուշնա գիւղի Եկեղեցւոյ ի նպաստ խնդրուած հանգանակութիւնը. Մերժուած

16. Արժ. Տ. Ամբրոսիոս վարդապետ Թարինեանի յարուցած պահանջքի խնդիրը. Որոշուած

17. Ամպարճեանի պահանջքը Մանանեան ժառանգորդներէն. Վերջացած

18. Բերայի Հրկիզելոց հաշուական խընդիրը: Վարչութեան սեղանին վրայ

19. Բ. Դրան ծանուցագիրը՝ կալուածական վկայագրոց ձեւին և յանձնման մասին. Կարգադրուած

20. Բերայի Թորգոմեան ընկերութեան կանոնագիրը. Յետաձգուած

21. Բարթողոմեան Տ. Էֆ.ի պահանջքը Գարակէօմրիւկի Եկեղ. սնտուկէն. Վերջացած

22. Բ. Դրան սենեկապանի ամսականը կեդր. սնտուկէն. Որոշուած

23. Բարիսոն Եսդրիկեանի կլծկն. Ֆէրմանը Ս. Խաչ Եկեղեցւոյ վրայ. Վերջացած

24. Բ. Եղբարց ազգային տրոց խնդիրը. Վերջացած

25. Բերայի Թաղ. Խորհրդոյ խնդրած վարկը. Վերջացած

26. Բ. Դրան Բէմազանլէ պարգեւը. Փակուած

27. Բերայի Թաղ. Խորհրդոյ խնդիրը՝ գետնի մը վաճառման մասին. Վերջացած

28: Բ. Սէֆէրեանի պահանջքն՝ Հիսարու Եկեղեցւոյ սնտուկէն. Որոշուած

64. Դրամատոմսի չվճարելութեան մի քանի Եկեղեցեաց մէջ. Անգիտուած

65. Դատական վճռագրի մը տրոց խնդիրը. Վերջացած

66. Երեք Երեւելիներու հարցումը Պէզճեան Ամիրայի կտակի մասին. Վերջացած

67. Եւդոկիայի Ս. Յովակիմայ վանուց կալուածն եւ դրամը յԱդրիանուպոլիս. Որոշուած

68. Եղիա աղա Մելիքեանի կալուածական Ֆէրմանը Ս. Խաչ Եկեղեցւոյ վրայ. Վերջացած

69. Եէնի–Գաբու Թաղի Ննջեցելոց արձանագրութեան մասին տեղւոյն Թաղ. Խորհրդոյ բողոքն՝ ընդդէմ քահանայից դասուն. Բացատրութեան կ'սպասուի

70. Եէնի–Գաբուի Եկեղեցւոյ վրայ աւանդ գտնուած խանութը միւթէվէլլիէն վերադարձնելու. Վերջացած

71. Եէնի–Գաբու Թաղի Ազգային աղքատաց տուրքն եւ հաշիւը. Վերջացած

72. Եւդոկիոյ վանուց սեփհական ի Մայրաքաղաքս գտնուած կալուածական [illegible] մը խնդիրը. Վերջացած

73. Եսնեա գիւղի Եկեղեցականի մը համապարծի ծախքը. Գործ. վերջացած

74. Եէնի–Գաբուի Եկեղեցւոյ վրայ աւանդ գտնուած Սարգսեան Էֆ.ի կալուածի խնդիրը. Վերջացած

75. Երուսաղէմայ վանուց վրայ աւանդ գտնուած կալուածի մը առուծախի վկայագիրն. Արտօնուած

76. Եուսուֆեան Էֆ.ի յանձնագիրն՝ Ազգ. տրոց հաւաքչի մը մասին. Որոշուած

77. Երզնկայի Մթննի գիւղի Եկեղեցւոյ ի նպաստ հանգանակութեան մը առաջարկն. Մերժուած

78. Եւրոպական լրագրողներու խնդրած նուէրն՝ հոգեւոյս Տ. Ներսէս Պատրիարքի գործոց հրատարակման մասին. Վերջացած

79. Զնտանի բանտարկելոց ի նպաստ [illegible] արդիւնքն եւ բաշխումը. Վերջացած

80. Էջմիածնէն հասած Հոլանտական փոխատուութեան կտրօններն՝ Միացեալ Ընկերութեան յանձնուելու համար. Գործադրուած

81. Էսայեան եւ Ընկ. պահանջքը Գալաթիոյ Ս. Լուսաւորչի Եկեղ. սնտուկէն. Վերջացած

82. Էյուպ Ս. Աստուածածին Թաղի Ազգային տրոց բաշխման ցուցակը. Առ. կախուած

83. Էյուպ Ս. Աստուածածին Եկեղեցւոյ սեփհական պարտէզի մը վարձակալութեան խնդիրը. Վերջացած

84. Տիկին Էֆտիկ [illegible] կալուածական Ֆէրմանը Մ. Եկեղեցւոյ վրայ. Վերջացած

85. Էթմէյտանի Թաղի վարժարանին պատկանեալ աւանդ դրամը. Յանձնմամբ վերջացած

86. Էյուպ Ս. Եղիա Եկեղեցւոյ նախ. Թաղ. Խորհրդոյ անկանոն վարմունքը. Ի քննութեան

87. Էյուպի Թաղ. Խորհրդոյ դէմ բողոք՝ հանգուցեալ Դանիէլի որբոց դրամի տոկոսեաց մասին. Որոշուած

88. Էջմիածնայ Կաթողիկոսական Յանձնաժողովոյ տեղեկագրին տպագրութեան ծախքը. Վերջացած

89. Թօփ–Գաբու Թաղի Ազգային տրոց բաշխման ցուցակը. Առ. կախուած

90. Թօփ–Գաբու Թաղի Ազգային տրոց գանձումն եւ հաշիւը. Վերջացած

91. Թղթակաճառ Գօրունեան Էֆ.ի հին պահանջքը Կեդր. սնտուկէն. Կարգադրութեան մէջ

92. Թէրվիր Սէրայի Յունաց պարահանդէսի տոմսերը. Վճր. վերջացած

93. Ընտիր թանաքի գործածութեան խնդիրը, պաշտօնական գրութեանց առթիւ. Վերջացած

94. Թէնասիֆ [illegible] պահանջքը Գում–Գափուի դպրոց Եկեղ. սնտուկէն. Վերջացած

95. Թօփ–Գափուի Եկեղեցւոյ հին պարտուց բարձման համար նախորդ Տնտես. Խոր.

հերգոյ կողմէ արտօնելով հանգանակութեան հաշիւը · Վերջացած

96. Թաշճեան Նիկողոս էֆ.ի պահանջքը Գում-Գափուի դպրոց Եկեղ. անտուկէն · Վերջացած

97. Թիւթիւնճեան Սեպուհ էֆ.ի կողմէ Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղ. նուիրեալ 10 հատ Երկթ. արժեթղթերու վրայ արձանագրութիւնն Սամաթիոյ Թաղ. Խորհրդոյ կողմէ · Որոշուած

98. Թօփ-Գափուի Եկեղ. սեպհական արտճարանի վարձուց խնդիրը · Վերջացած

99. Թօփ-Գափուի փառն վարժապետութեան խնդիրը · Վերջացած

100. Թէրճանի Առաջ. Տեղապահին ճանապարհի ծախքը · Վճր. վերջացած

101. Իւսկ. Ս. Կարապետ Եկեղեցւոյ վրայ դարձած Մ. Ժամկոչեանի տան փէրայը · Արտօնուած

102. Իւսկ. Ս. Խաչ Եկեղեցւոյ վրայ դարձած Գրասէրեանց տանը փէրայը · Արտօնուած

103. Իւսկ. Սելամի Թաղի ազգային որբոց բաշխման ցուցակը · Առ. կախուած

104. Իւսկ. Սելամի Թաղի Ազգային որբոց գանձման և հաշուոց խնդիրը · Վերջացած

105. Իւսկ. Ս. Կարապետ Եկեղեցւոյ վրայ գտնուած փախողեան երրորդ կալուածը · Վերջացած

106. Իւսկ. Ս. Կարապետ Թաղի Ազգային որբոց գանձումն և հաշիւը · Վերջացած

107. Իւսկ. Ինտիկլի վարժարանին ժե-բէէ որբոց խնդիրը · Որոշուած

108. Իւսկ. Վերնդամանտոն ժե-բէէ որբոց խնդիրը · Որոշուած

109. Իւսկ. Ս. Կարապետ Եկղ. վաճառելու երեք կալուածոց կալուածագրերու վաւերացման խնդիրը · Վերջացած

110. Իւսկ. Ինտիկլի մատրան Յանձնաժողովոյ կերպյ վաւերացումը · Մերժուած

111. Լիմ և Կտուց անապատաց Հ-գ-ին տան մը վաճառումը · Վերջացած

112. Խրիմեան Ուսումն. Ընկ. Նախորդ գանձապետին հաշուոց խնդիրը · Վերջացած

113. Շ. Նուպար վարժարանի գրքից և պարտուց խնդիրը · Վարչ. սեղանին վրայ

114. Խօլասեան Արժ. Պօղոս վարդապետի փոխառութիւնը Կեդր. անտուկէն. Վերջացած

115. Խաչթիկ (Բողէշ) գիւղացւոց Ընկ. կանոնագրի վաւերացման խնդիրը. Յետաձգուած

116. Խասգիւղցի աղքատ կնոջ մը ընծայութեան խնդիրը · Վերջացած

117. Խ. Անդրէասեան օրիորդին կալուածական փէրայը Սէնի-գարուի Եկեղ. վրայ ։ Արտօնուած

118. Կոլձօկ (Բողէշ) գիւղի Եկեղ. շինութեան ի նպաստ հանգանակելու գումարը · Յանձնամբ վերջացած

119. Կէտիկ-Փաշայի Եկեղ. սեպհական Գատրկա կիմանիի սպասանին գրաւման խնդիրը · Վարչ. սեղանին վրայ

120. Կեսարիոյ Թալասայն գիւղի Ս. Թորոս Եկեղ. պահանջքը զանազաներէ · Կարգադրութեան մէջ

121. Կամսարական էֆ.ի պահանջքը Կեդր. անտուկէն · Կարգադրուած

122. Կեսարիոյ Ֆէնէսէ գիւղի Բոյաճեան Ընկ. կալուածական գնումը Արտօնուած

123. Կիրճեան Կարապետ էֆ.ի պահանջքը Կեդր. անտուկէն · Ի նկատողութեան

124. Կամսարական Գ. Որբոց կալուածական գնման խնդիրը Արտօնուած

125. Կիւլպէնկեան էֆ.ի պահանջքը Կեդր. անտուկէն · Վերջացած

126. Կրօն. Ժողովոյ յատուկ Դիւանագրարաց ընտրութեան խնդիր · Վերջացած

127. Կեսարիոյ Մանճըսուն գիւղի վարժարանին պարտուց բարձման համար հանգանակութեան մ'առաջարկն · Մերժուած

128. Կեսարիոյ Ֆէնէսէ գիւղի Եկեղ. սեպհական կալուածի մը վարձուց խնդիրը · Վերջացած

129. Պէշիկ-Թաշի մարդահամարի առման եւ գրանցի վարձքը. Վերջացած

130. Պեստրիոյ Զօհարյան դիմումն Եկեղ. շինութեան եւ հանգանակութեան խնդիրը. Մերժմամբ յղուած

131. Կեսարիոյ Տեառն. Խորհրդոյ ընտրութիւնը. Վաւերացուած

132. Հիսարու Եկեղ. շրջափակի շինութեան խնդիրն եւ առ այս անկելոյն Նախկին Թաղ. Խորհրդոյ անհրաժեշտ ձեռնարկն. Բացատրութեան կսպասուի

133. Հիւանդանոցի հաստատութեան վերաբերեալ վագֆի առուծախի մը արդեանց յանձնումն. Վ.Ճ.ւ. վերջացած

134. Հիւանդանոցի վագֆին վերաբերեալ մաշիւլ տան մը վաճառման խնդիրը. Արտօնուած

135. Հիւանդանոցի Հոգաբարձութեան գնոյ առած կալուածի մը առուծախի վկայագիրն. Արտօնուած

136. Հաղարեան Կ. Լ.Փ.ի պահանջքը Եկեղ. սնտուկէն Վերջացած

137. Հիսարու Թաղ. Խորհրդոյ խնդիրն աւայրոցի մասին. Որոշուած

138. Հանէսեան Տիմոթէոս վարդապետի սեպհական կալուածի մը առուծախը. Արտօնուած

139. Հիւանդանոցի սնտուկի պահանջքի խնդիրը Սէնթ Զաքարի Եկեղ. սնտուկին հետ. Վերջացած

140. Հիւանդանոցի սնտուկի պահանջքը Պէյքօզի Եկեղ. սնտուկէն. Որոշուած

141. Հինբերարդլէյեան Արժ. Յ. Քահանայի ամսականի պահանջքը՝ ընծայացուց դատարանի առթիւ. Վ.Ճր. վերջացած

142. Զ. Ճ. դատաստանին խնդրած նպաստը. Վ.Ճր. վերջացած

143. Հիսարու մքթարին պահանջքը Մ. Մօրիկ անձէն. Որոշուած

144. Ղալաթիոյ Եկեղ. որբախնամական խնդիրն, Տէրի գիւղի Թաղ. Խորհրդոյ ձեռամբ կարգուած. Որոշուած

145. Ղալաթիոյ մարդահամարի ծախուց խնդիրը. Որոշուած

146. Ղալաթիոյ Եկեղ. սնտուկին պարտուց քանակութեան մասին յարուցուած խնդիրը. Վերջացած

147. Ղալաթիոյ կալուածական Հոգաբարձութեան առաջարկը կրպակի մը գնման մասին. Արտօնուած

148. Ղալաթիոյ Եկեղ. Հաքքըն ի Բերայ մուհիւլ կալուածի մը վաճառման խնդիրը. Արտօնուած

149. Ղալաթիոյ Ազգ. կալուածոց վիճակացոյցը. Կ'սպասուի

150. Ղալաթիոյ Թաղային եւ կալուածական խնդիրները. Վերջացած

151. Ճամբորդաց անցագրի ընկալագրոց տուրքադրութեան խնդիրը. Վերջացած

152. Մանանեան ազգահամարի խնդիրը. Վերջացած

153. Մասահեանց տոհմին ժողահամարի խնդիրն. Վերջացած

154. Միջագիւղի Եկղ. սնտուկին պահանջքի մը խնդիրն. Վերջացած

155. Միջագիւղի վարժարանին վերաշինութիւնը. Վերջացած

156. Մարդահամարի գործողութեան ծախուց խնդիրը. Վերջացած

157. Մախալաճեանց աւանդ կէտին խընդիրը Նարլըգափուի Եկեղեցւոյ հետ. Վերջացած

158. Միրաքէչ աղա Անդրէասեանի տապանաքարի արձանագրին վաւերացումը. Վերջացած

159. Միացեալ Ընկերութեանց հաշուետուութեան պարտաւորութիւնը. Ի Նկատողութեան

160. Մայր Եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ խընդիրը մի քանի կառակաց մասին. Վերջացած

161. Մայր Եկեղեցւոյ հանգ. Տ. Մեսրոպ քահանայի պահանջքի խնդիրը Գարաճէօմրիւկի Եկեղեցւոյ հետ. Որոշուած

162. Մայր եկեղեցւոյ վարժարանին Թըղթածախութեան հաշուոց խնդիրը.
Վերջացած

163. Մեսրոպ Սրբազանի պահանջքը՝ հանգ. Զաքարիա վարդապետէն. Վերջացած

164. Մուսուլի քահանային նպաստի խնդիրը.
Վերջացած

165. Մ. Տէօքմէճեանի դասատուին պահանջքը Սամաթիոյ և Գումգաբուի դըրսի եկեղեցեաց սնտուկէն. Վերջացած

166. Մատթէոս Սրբազան Իզմիրլեանի կալուածական ֆէրմանը՝ Իւսկ. Ս. Կարապետ եկեղ. վրայ. Արտօնուած

167. Մ. անուն անձին նպաստի խնդիրը.
Ցրուած

168. Մայր եկեղեցւոյ Թաղ. Խորհրդոյ հին լրագրաց վաճառման խնդիրը. Վերջացած

169. Միջագիւղի մէջ խափանեալ ընկերութեան մը աւանդ դրամը.
Գանձմամբ վերջացած

170. Մասիս լրագրի խմբագրութեան պահանջքը Մ. Եպիսկոպոսէ. Վերջացած

171. Մկրտիչ Սորըեանի պահանջքը Մշոյ Ս. Առաքելոց վանքէն Ցրուած

172. Մաքրիգիւղի եկեղեցւոյ զանգակատան շինութեան և հանգանակութեան խընդիրը. Վերջացած

173. Մաքրիգիւղի եկեղեցւոյ սնտուկին մէկ պահանջքի խնդիրը. Վերջացած

174. Մաքրիգիւղի Տ. Պետրոս քահանայի մէկ պահանջքի խնդիրը. Վերջացած

175. Միացեալ Ընկերութեանց և Հայագործ Զաքար աղայի միջեւ ծագած քօնդօլիտէի խնդիրն. Որոշուած

176. Յակոբ Ոսկան էֆ.ի պահանջքը Գումգաբուի դրսի եկեղ. սնտուկէն. Որոշուած

177. Տ. Յովհաննէս Աւագ քահանայ Մկըրեանի ի Ս. Էջմիածին ուղեւորութեան ծախքը.
Վճր. վերջացած

178. Ց. Երէցեանի պաշտօնի մասին ըրած խնդիրը. Յետաձգուած

179. Ներսէս Հոգեւոյս Ս. Պատրիարքի ի Միջագիւղ տան մահկիւլի վաճառումը.
Յետաձգուած

180. Նարլըգաբուի Թաղային սահմանի խընդիրը. Վարչ. սեղանին վրայ

181. Նարլըգաբուի եկեղեցւոյ պահանջքը Մ. Թօգաթեան և Ընկերութենէ.
Ի նկատողութեան

182. Նշանտուութեան օրերը գանձուած արձանագրութեան տրոց խնդիրը. Վերջացած

183. Նշանտուութեան արդեանց մասին Հիւանդանոցի Հոգաբարձութեան խնդիրը.
Կարգադրութեան մէջ

184. Նորատունկեան էֆէնտիի պահանջքը Կեդր. սնտուկէն. Վճր. վերջացած

185. Նորգիւղի միացեալ տրոց գանձումը և հաշիւը. Վերջացած

186. Ն. Ց. էֆ.ի ազգ. տրոց խնդիրը.
Վերջացած

187. Ն. Պ. էֆ.ի ազգ. տրոց խնդիրը.
Վերջացած

188. Նարլըգաբուի եկեղեցւոյ վրայ դառնալիք Սարգսեան Կարապետի տան խնդիրը.
Վերջացած

189. Նշանտուքի գործողութեանց հսկողութեան պաշտօնը Կարգադրուած

190. Շամլեանի պահանջքը Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցիէն Որոշուած

191. Շապին Գարահիսարի Չըրտըխ գիւղի ազգային վարչական և կալուածական խնդիրները. Վարչ. սեղանին վրայ

192. Ուսում. Խորհրդոյ առաջարկն՝ Հ. դաստիարակի նպաստի մասին.
Վճր. վերջացած

193. Ուսում. Խորհրդոյ վաւերած մի ընկերութեան կանոնագիրն. Որոշուած

194. Ուսում. Խորհրդոյ քով գտնուած տնտես. թղթեր. Որոշուած

195. Ուսում. Խորհրդոյ առաջարկն Ք. դասատուի նպաստի մասին. Վճր. վերջացած

196. Ուսում. Խորհրդոյ առաջարկն՝ Ղալաթիոյ ժամանակոչաց միոյն՝ կեդ. սնտուկէն ո՛չ

յանուն դաստիարակութեան ամսական յատկացնելու մասին. Մերժուած

197. Ուսումն. Խորհրդոյ նիստի օրերն առաւօտուց ի Ղալաթիա փոխադրութեան ծախքը. Վճարման մէջ

198. Ուսումն. խորհրդոյ խնդրած գումարը աղքատ դաստիարակաց նպաստելու համար. Վճր. վերջացած

199. Չիլինկիր Տիգրան աղայի կալուածոց առուծախի խնդիրը Ս. Խաչ եկեղեցւոյ հետ. Վերջացած

200. Չնքուշի Անիչ գիւղի ասանդ դրամը. Վճր. վերջացած

201. Գէյվէօղի Թաղային խնդիրները. Մասամբ կարգադրուած

202. Գէյվէօղի Եկեղ. սնտուկին հաշուեմատեանները. Վերջացած

203. Գալաթու Թաղային սահմանի խնդիրը Գարակէօմրիւկի հետ. Ի նկատողութեան

204. Պատրիարքարանի հաշուետումարայ մասին Ազգ. Ժողովոյ Համար. Դիւանի տեղեկագիրն. Ի գործադրութեան

205. Պատր. փոխանորդութեան ամսականը. Որոշուած

206. Պատր. երեք պաշտօնէից ամսականաց յաւելման խնդիրը. Որոշուած

207. Գէպէքի Ս. Սուքիաս քահանայի պահանջքը՝ Գուրուչէշմէի Եկեղ. սնտուկէն. Ցզուած

208. Պատրիարքարանի դրական պիտոյքը. Տնօրինուած

209. Պատր. բարապանաց և սենեկապանաց հանդերձագինը. Որոշուած

210. Պատր. պաշտօնեայ Գասպարեան Յ. էֆ.ի պաշտօնն և ամսականը. Որոշուած

211. Գէպէքու Ս. Ծուքիասի ամսականը կեդր. սնտուկէն. Վճր. կը շարունակուի

212. Պատրիարքարանի սնտուկին ծախուց վճարման արտօնման խնդիրը. Որոշուած

213. Պատրիարքարանի բարապանաց երթևեկութեան և յարաբերութեանց ծախուց խնդիրները. Քննութեան մէջ

214. Պէօյիւքտէրէի ազգ. օրոց հաւաքումն և հաշիւը. Վերջացած

215. Պատրիարքարանի նշանաւորի արձանագրութեան պաշտօնէութիւնը. Վերջացած

216. Գէյվէօղի Թաղ. Խորհրդոյ կնքոյ խնդիրը. Վերջացած

217. Գէյվէօղի մքթարի կնքոյ խնդիրը. Վարչ. սեղանին վրայ

218. Պիլէճիկի Ցովսէփ վարդապետի ճանապարհի ծախքը. Վճր. վերջացած

219. Պատր. Պաշտօնէից հանգուցեալ Զաքարիա վարդապետի ամսականը և պահանջքը. Վճր. վերջացած

220. Պատր. սնտուկին փոխատուութիւնը զանազաններէ. Մասամբ կարգադրուած

221. Պատր. Նախ. Պաշտ. Թովմաս էֆ.ի հանգստեան թոշակը. Որոշուած

222. Պատր. տարեկան փոյթը՝ Վսեմ. Ունճեան էֆ.ի կողմէ նուիրեալ. Արձանագրուած

223. Պատր. ջուրն և ռուսէօղլի ամսականը. Վերջացած

224. Պըլըխտանեան էֆ.ի պահանջքը կեդր. սնտուկէն. Կարգադրուած

225. Պատրիարքական նպաստ Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղ. շինութեան. Վճր. վերջացած

226. Պատրիարքական նպաստ Բ. Գ. ի որդւոյն կրթութեան. Վճր. վերջացած

227. Պոյաճի գիւղի Եկեղ. սեպհական կալուածոց մրճակացոյցը. Կ'սպասուի

228. Պոյաճի գիւղի Եկեղ. գոյից խնդիրը. Վերջացած

229. Պատրիարքարանի սնտուկին ծախքը Պայրամի տօնին առթիւ. Վճր. վերջացած

230. Պէշիկթաշի Թաղ. Խորհրդոյ Ընտր. կոնդակագնի խնդիրը. Վերջացած

231. Պէյ-Պազարի հրկիզելոց նպաստի տոմսերն. Վճր. վերջացած

232. Գ. Զ. էֆ. Ազգային օրոց հաշիւը. Կարգադրուած

233. Գալաթու Թաղ. Խորհրդոյ մէկ խնդիրը գետնի մը մասին. Որոշուած

234. Պատրիարքարանի անցագրատան սենեկի նոր կնքոյ խնդիրը. Վերջացած

235. *Պատրիարքական Նպաստ Թօփգափուի Եկեղեցւոյ կալուածոց շինութեան.* Վճր. վերջացած

236. *Պէյքօզցի Պիրինճիկ տիկնոջ բնակութեան խնդիրը.* Որոշուած

237. *Պատրիարքարանի տպագրական գործերը.* Կարգադրուած

238. *Պատրիարքարանի սնտուկին շաբաթական ելեւմուտքը.* Կարգադրուած

239. *Պէշիկթաշի Թաղ. Խորհրդոյ սէքէսթրօն ի Բերա կալուածի մը մասին.* Որոշուած

240. *Պատրիարքարանի սնտուկին պահանջքը Յունաց Մեծ կղզիի Եկեղեցիէն.* Բանակցութեան մէջ

241. *Գ. Ա. քրոջ Թոռան Նպաստի խնդիրն.* Մերժուած

242. *Գալաթու Թաղ. Խորհրդոյ առաջարկը տան մը գնման մասին.* Մերժուած

243. *Գալաթու Թաղ. Խորհրդոյ առաջարկն արծաթեղինաց վաճառման մասին.* Բացատրութեան կ'սպասուի

244. *Գանտիլլիի այցելու հովուին ճանապարհի ծախքը.* Վճր. վերջացած

245. *Գ. Ս.ի ազգ. տրոց խնդիրը.* Կարգադրուած

246. *Պատրիարքական ամսականի խնդիրը.* Վերջացած

247. *Պատր. Տեղապահութեան նշանի ծախքը.* Վերջացած

248. *Պատրիարքարանի և Պատրիարքութեան նոր կնիքներու փորագրութիւնը.* Վերջացած

249. *Պատրիարքարանի բարապանաց պաշտօնական զօտիները.* Վերջացած

250–303. *Պատրիարքարանի պաշտօնէութեան ամսականաց յաւելման, պահանջից կարգադրման, ընտրութեան և դադարման վերաբերեալ խնդիրք թիւ 53.* Կարգադրուած

301. *Պօյաճի գիւղի Նախորդ Թաղ. Խորհրդոյ դէմ բողոք հաշուետուութեան մասին.* Բացատրութեան կ'սպասուի

305. *Պէշիկթաշի Թաղ. սնտուկին պահանջքի խնդիրը Մանանեան ժառանգորդաց հետ.* Վերջացած

306. *Սամաթիոյ Նոր թաղի Եկեղեցւոյ նորոգութեան խնդիրը.* Վերջացած

307. *Սեթեան Մ. էֆ.ի փոխառութիւնը կեդր. սնտուկին.* Մեծ մասամբ կարգադրուած

303. *Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղեցւոյ սեպհական գետնի մը վաճառումը* Արտօնուած

309. *Սամաթիոյ Նոր թաղի Եկեղեցւոյ պահանջքը Մ. Սինեմէ.* Որոշուած

310. *Սամաթիոյ Նոր թաղի Եկեղ. երեք երկթ. արծաթեղինոյ խնդիրը.* Վերջացած

311. *Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղ. սնտուկին մէկ պարտուց խնդիրը.* Կարգադրուած

312. *Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղ. հիմանց շինութեան հաշուեցոյցը.* Վաւերացուած

313. *Սամաթ. Ս. Գէորգ Եկեղ. Հօփֆին մահլիւլ ինկած կալուածոց վաճառումն.* Որոշուած

314. *Սեբաստիոյ Խորոխան գիւղի գանձանակի խնդիրը.* Յետաձգուած

315. *Սակազին կանոնագրոց և այլ վաւերագրանց.* Որոշուած

316. *Սամաթիոյ Ս. Գէորգ Եկեղ. կտակեալ պարտէզի խնդիրը.* Վերջացած

317. *Սամաթիոյ Նոր թաղի պատկանեալ աւանդ դրամն.* Մասամբ վերջացած

318. *Սեբաստիոյ Ղարաալօղուզ գիւղի Եկեղ. ի նպաստ խնդրուած գանձանակը.* Մերժուած

319. *Սեբաստիոյ Խանթարօզ գիւղի Եկեղ. ի նպաստ գանձանակի խնդիրը.* Վերջացած

320. *Վանայ Հայոց Ձորոյ Գոմ գիւղի Դպրոց. ընկեր. դրամը.* Քննութեան մէջ

321. *Վանայ Տեղ. խորհրդոյ ընտրութիւնը.* Վաւերացուած

322. *Վարչութեան հրաւէրները զանազան խնդրոց առթիւ.* Պատասխանուած

323. *Վանայ Սանդխտեան ընկ. յարուցած տոկոսի խնդիրը.* Ի նկատողութեան

324. *Վ. Տ. Մ. Եկեղեցականին պարտքը կեդր. սնտուկին.* Կարգադրութեան մէջ

325. *Տնտես. Խորհրդոյ գործառնութեանց մասին լրագրաց հրատարակութիւնք.* Որոշուած

326. *Տնտես. Խորհրդոյ դիւանին մէջ գտնուած մուրհակաց ցուցակը.* Վերջացած

*Բայց սոյն խնդիրներէն, նախորդ Տնտ. խորհուրդներէն մնացած զանազան խնդիրներ դեռ անլոյծ կը մնան ըստ հետեւեալ ցուցակի։*

1878-80 *հոկտ.* 30*ի Տնտես. Խորհրդոյ թողած* 50 *խնդիր՝ երէն՝*

1. *Խարբով վախճանեալ Սոսէփեան Պետրոսեանի գոյքն.*

2. *Ի Ռուսիա վախճանեալ Պաղտասար Գասպարեանի գոյքն.*

3. *Ի Ռուսիա վախճանեալ Զաքար Սոսիփանոֆի գոյքն.*

4. *Ի Ռուսիա վախճանեալ Ալլահվէրտեանի գոյքը.*

*Սոյն 4 խնդրոց կարգադրութիւնը օրինաւոր ժառանգորդաց ներկայանալէն կախումն ունենալուն՝* Օրակարգ

5. *Իւսկ. Տ. Յովհաննէս քհն.ի երէցկնոջ և Ս. Կարապետի Թաղ. խորհրդոյ միջև ծագած կալուածական խնդիրներ. անպատասխանի մնալուն՝* Անորոշ թողուած

6. *Արտամէտ գիւղացի Յարութիւնի գոյից խնդիրը.* Ջեռք չառնուած

7. *Ազգահամարի մասին Փարիզէն Ռափայէլեանի տեղեկագիրը.* Ջեռք չառնուած

8. *Պայպուրթցի Արզարի կտակային խնդիրը.* Քննութեան մէջ

9. *Այսոէֆանոյի Եկեղ. սեպհական տան մը նուիրելը.* Բացատրութեան կ'սպասուի

10. *Կտակաթղթոց միօրինակութիւնը.* Օրակարգ

11. *Ատանայի Թաղ. Խորհրդոյն ապօրինի ձեռնարկն՝ կալուածական վաճառման մը մասին.* Բացտրութեան կ'սպասուի

12. *Արտամէտ գիւղի Արշակունեան ընկ. պահանջքի խնդիրը.* Օրակարգ

13. *Բալուի Մեսրոպեան ընկերութեան պահանջքի խնդիրը.* Օրակարգ

14. *Գամալիկեանց տան վաճառման մէջ Բերայի մրթարին ապօրինի ձեռնարկը.* Քննութեան մէջ

15. *Վանայ Հաւէնց գիւղի դրամի զանազանաց քով.* Օրակարգ

16 *Ասանէթի ժառանգական մկրտագրի խնդիրը.* Օրակարգ

1881 *նոյմ.* 1է 82*ի վերջ Տնտեսական Տեսչութեան թողած* 94 *խնդիրներէն՝*

1. *Անփոփումն և արձանագրութիւն հին կտակագրոց և ոստմանագրոց (մինչև* 1880 *թուականն). Կտակաց Հոգաբարձութեան յատուկ և կամ մասնաւոր պաշտօնէի մը կարօտ լինելուն՝* Օրակարգ

2. *Պատրաստութիւն ընդհանուր աղգահամարի.* Օրակարգ

3. *Մայր Եկեղեցւոյ թաղային հաշուոյ դէմ Ա. Տամկաճեան էֆ.ի դիտողագիրը. Դիտող էֆ.ի վերստին չներկայանալուն՝* Անորոշ

4. *Այխտէֆանոյի Թաղ. Խորհրդոյն զանցառութիւնը հաշուոց մասին. Կը տեւէ ցայսօր*

5. *Էյուպ Ս. Եղիա Եկեղ. Թաղ. Խորհրդոյն զանցառութիւնը հաշուոյ մասին. Կըտեւէ ցայսօր*

6. *Իւսկ. Ս. Խաչ Եկեղ. Թաղ. Խորհրդոյն զանցառութիւնը հաշուոյ մասին. Կըտեւէ ցայսօր*

7. *Ալեմտաղիի Եկեղ. Թաղ. Խորհրդոյն զանցառութիւնը հաշուոյ մասին. Կը տեւէ ցայսօր*

8. *Գալաթիոյ. 1878-81 թուականի կեդրն. Հոգ. հաշուոց խնդիրն.*

Մասամբ կարգադրուած բայց անորոշ

9. *Բերայի 1870էն սկսեալ կեդրն. Հոգ.* 7 ½ *տարեկան հաշուոյ խնդիրն.* Անորոշ

10. *Հիւանդանոցի արտաքսեալ պաշտօնէից նենգութեան խնդրոյն մանրամասն տեղեկագիրը.* Կսպասուի դեռ

11. *Մահալըճցի Մարիցա անուն կնոջ վերագրուած կեղծ կտակն.* Անորոշ

12. *Նշաստաճեան կտակի վաւերացման խնդիրը՝* Օրակարգ

13. *Եէնիգիւղի Թաղ. Խորհրդոյ ներկայած կտակագրի ծրագիրն.* Օրակարգ

14. *Զէօմլէկճի Պետրոսի կտակային խնդիրը.* Օրակարգ

15. *Գուրտեանի յաւելուածոյ կտակին վաւերացումը.* Օրակարգ

16, *Փանոսեան Գրիգորի կորսուած կտակագիրն.* Օրակարգ

17. Եկեղեցեաց վրայ դարձած կալուածոց դանդաղեալ պայմանագրերն. Օրակարգ

18. Իւսկ. Ս. Խաչ Եկեղ. սեպհական կալուածի մը առթիւ խնդիրը. Բացտ. կ'սպասուի

19. Եէնի-գիւղի Եկեղ. սեպհական գետնոյ վաճառման խնդիրը. Օրակարգ

20. Ղալաթիոյ Եկեղ. Թաղ. Խորհրդոյ առաջարկն արծաթեղինաց վաճառման մասին.— Բացտ. կ'սպասուի

21. Իւսկ. Ս. Խաչ Եկեղ. Թաղ. Խորհրդոյ առաջարկն արծաթեղինաց վաճառման մասին. Բացտ. կ'սպասուի

22. Սամաթիոյ Եկեղեցւոյ սեպհական Մեղրոպէ պարտէզի խնդիրն. Օրակարգ

23. Ակնայ Նորշէր գիւղի Եկեղեցւոյ դրամն Սառայ անուն կնոջ մը քով. Օրակարգ

24. Մանճըլըխի ԱՆՁ. Ընկերութեան գանձառութեանը հաշուոց մասին. Շարունակէ

25. Ղալաթիոյ Տարօնեան Ընկ. պարտքն ու գանգատներ. Օրակարգ

26. Մասեհեան ժառանգորդաց պահանջած քննութիւնը. Օրակարգ

27. Հօճա Ղազարի ժառանգորդաց բողոքն՝ ընդդէմ Մարկոսեան Գ. էֆ.ի Օրակարգ

28. Սամուրքաշեանի պահանջքը Սեբաստիոյ Գաւառական սնտուկէն. Օրակարգ

29. Ղալաթիոյ Եկեղ. մէկ կէօշք տան խօտեղատուէ խնդիրն. Օրակարգ

30. Նշանտուութեան օրերը քահանայից դրամական միջամտութեան բարձումն. Օրակարգ

31. Կիպրոսի մէջ Ս. Երուսաղէմայ կալուածոց վիճակը. Օրակարգ

32. Պուքրէշի Ազգ. Գերեզմանատան վիճակը. Օրակարգ

33. Ակնայ Կամըրկաւ գիւղի կալուածական խնդիրները. Օրակարգ

34. Վանայ Պօղոս Նախիկոպոսի ֆէրմանին 2½ ոսկւոյ ծախքը. Օրակարգ

35. Քեանդըրլիի Եկեղ. շինութեան ի նըպաստ հանգ. խնդիրը. Օրակարգ

36. Կիլիկիոյ Վանաց Նորոգութեան ի նըպաստ հանգ. մը խնդիրը. Օրակարգ

37. Մշոյ Մառնա Վանուց նորոգութեան պարտուց և հաշուոց խնդիրը. Օրակարգ

38. Ձորքուր-Չէշմէ խանի դատական Ազգային կալուածը. Օրակարգ

39. Եւդոկիոյ Վանուց արծաթեղինաց ապօրինի վաճառումն. Բացտ. կ'սպասուի

1882–83ի Տնտեսական Խորհրդոյ թողած 115 խնդիրներէն Օրակարգը դեռ կը մնան,

1. Մայր Եկեղեցւոյ Թաղ. սնտուկին պարտաւորութիւնը Պատրիարքութեան քարոզչութեան ամսական տալու մասին.

2. Պատրիարքարանի պահեստի դիւանատան պէտքը.

3. Հօճա Ղազարի Ֆիլիպէ գտնուող ժառանգորդաց պահանջումն իրենց ժառանգական բաժնի մասին.

4. Էյուպ Ս. Եղիա Եկեղ. Թաղ. Խորհրդոյ խնդիրը Քաքմաճի Մանուկի կտակած տան մասին.

5. Եւդոկիոյ Ազգային պարտէզի մը խընդիրն.

6. Պատրիարքական պաշտօնագիր Ազգային հաստատութեանց ծախուց քանակութեան մասին.

7. Փափազեան Կ. էֆ.ի գիրն Գէորգ էֆ.ի միւթէվէլլիութեան հաշուոց նկատմամբ.

8. Տօքթէօր Պէհրամի կտակագրի խնդիրը.

9. Թաղ. հաշուոց միօրինակութեան մասին Թորդոմեան և Տիւլկէրեան էֆէնտիներու տեղեկագիրը.

10. Վանայ Որբանոցին մէջ արհեստարան մը բանալու մասին Խնամատար Ընկերութեան գիրը.

11. Եէնի-գիւղի Թաղ. Խորհրդոյ խնդիրը Եկեղեցւոյն աղբիւր մը յատկացնելու մասին.

12. Սոլկոյ Յանձնաժողովոյ հաշուոց խընդիրն.

# ՑԱՆԿ

## ՊԱՐՈՒՆԱԿՈՒԹԵԱՆ ՏԵՂԵԿԱԳՐԻՍ



## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ․ — ՋԱՆԱԶԱՆՔ

## ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ․ — ԿՏԱԿԱՅԻՆ

## ՄԱՍՆ ՉՈՐՐՈՐԴ · — ԵԼՄՏԱԿԱՆ



---

# ՎՐԻՊԱԿ

| ԵՐԵՍ | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|
| 12 | *սիւնակ* Ա. *տող* 17 — *Մայիս* 22 | 1885 *Մայիս* 22 |
| 12 | *սիւնակ* Ա. *տող* 17 — *զանցառութեանց մասին* | *զանցառութեանց համար* |
| 18 | *սիւնակ* Բ. *տող* 22 — *ղեղծում մը չնշմարելով Աղաճան էֆ.* | *Ջեղծում մը՝ Աղաճան էֆէնտիի* |
| 21 | *սիւնակ* Բ. *տող* 12 — *Ֆի-ընֆիյլէն* | *Ֆի-ընֆիյլլէն* |
| 21 | *սիւնակ* Բ. *տող* 26 — *նոյն* | *և նոյն* |
| 24 | *սիւնակ* Բ. *տող* 35 — *քուրտեան* | *Քիւրտեան* |
| 25 | *սիւնակ* Ա. *տող* 2 — *այս* | *և այս* |
| 25 | *սիւնակ* Ա. *տող* 9 — *կալուածական* | *կալուածոց* |
| 25 | *սիւնակ* Ա. *տող* 17 — *առաջնորդը* | *առաջնորդական* |
| 25 | *սիւնակ* Բ. *տող* 12 — *տնօրինել* | *տնօրինուին և* |
| 27 | *սիւնակ* Ա. *տող* 38 — *Բերզինեալ* | *Բերբինեղ-ըն* |
| 29 | *սիւնակ* Ա. *տող* 20 — *կարեւոր էր ,* | *կարեւոր էր և մասոյց առ Քաղ. ժող.* |
| 31 | *սիւնակ* Բ. *տող* 20 —*կարգադրութեան մասին* | *կարգադրութիւնը* |
| 32 | *սիւնակ* Բ. *տող* 7 — *այն* | *սոյն* |
| 47 | *սիւնակ* Բ. *տող* 8 — *այս դրամն* | *այս դրամէն 200 ոսկի* |
| 62 | *սիւնակ* Բ. *տող* 34 — *անհատական տրոց* | *անհատական խնդրոց ,* |
| 73 | *սիւնակ* Բ. *տող* 32 — *կալուածագրերն* | *հաշուեթղթերը* |

